# ԵՐԳ ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆ

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ*

Աշուն է խորին. աշնան մեջ պաղ
Անտառն է թափում տերևն իր բոց.
Եվ աշնան ծոցում ջինջ ու խաղաղ
Կանաչ գարունն է երգում հայոց:
Կանաչ գարունն է ելնում երկինք.
Ցնծության ձայնն է ելնում երկինք.
Պահը քայլում է հուր երգերով.
Եվ տարիները քառասունհինգ
Ծափահարում են մեր ձեռքերով:
Ծնունդն ենք տոնում այն փառապանծ
Եվ արարումն այն առավոտի,
Որ Հայաստանը իմ տառապած
Այս Նոյեմբերով կանգնեց ոտի:
Օ՜, Նոյեմբեր իմ, հողմեր տեսած.
Եկար ու տաք շունչ բերիր քեզ հետ.
Քո՛նն է երկիրը այս քարագանձ
Եվ մանուկների աղմուկը խենթ:
Քո՛նն է խնդումը մեր այս երթի.
Քո՛նն է բարեբեր հողը հայոց.
Ձեռքով իմ ճարտար ժողովրդի
Շինարար դարձար ու հողագործ:
Միշտ կառուցել ես մեր օրերում
Քո խոյանքներով հազարաձեռք՝
Եվ ճամբարները Ծաղկաձորում.
Եվ դպրոցները ամենուրեք:
Եվ դպրոցները մրմունջ ու վիշտ.
Ցրել ես վաղուց մրմունջ ու վիշտ.
Դու խաղաղության լույսով ես լի.

Օրերիդ ճամփան պայծառ է միշտ
Եվ տրտմությունդ անդառնալի:
Հողին ես նայում աչքով բարի.
Հողի խայտանքն է քեզ օրորում.
Ընդդեմ գիշերվա ու խավարի
Լույսեր ես վառել Լոռվա ձորում:
Արև ես քամում խենթ գետերից.
Մեր Սևանն Արփա գետին կապում.
Խնդում առնելով լույս եթերից՝
Լուսնի ճամփան ես արդեն չափում:
Դու մի ճամփորդ ես անքուն. աննինջ.
Բարիք ես երկնում ամեն ժամում.
Կրակ ես բերում Ղարադաղից
Ու ջերմություն ես մեզ բաժանում:
Օ՜, հայոց արև իմ Նոյեմբեր.
Արևն արև է քեզ ցանկանում.
Իմաստնանում ես ծերերի հետ.
Մանուկների հետ նոր մանկանում:
Քայլում ես մեզ հետ ու անբաժան
Եվ թեպետ ուշ ես մեզ հյուր գալիս.
Բայց թվում է. թե ամեն աշնան
Դու ես դպրոցի զանգը տալիս:
Նոր խոյանքներ ես նետում երկինք՝
Կյանքի խոպանը միշտ հերկելով.
Եվ տարիներդ քառասունհինգ
Ծափահարում են մեր ձեռքերով:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՈՒՔԻԱՍՅԱՆԻ





ՆՈՅԵՄԲԵՐ
№ 11 1965 Թ.

ՊԻՈՆԵՐ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
43-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# ԼԱՎԱԳՈՒՅՆ ԳՆԱՀԱՏԱԿԱՆԸ

Զ. ՎՈՍԿՐԵՍԵՆՍԿԱՅԱ



Հաճելի է գիմնազիայից տուն վերադառնալ սեպտեմբերյան գեղեցիկ օրերին. փարթամ այգիները ներկված են վառվռուն գույներով, օդը հագեցած է հասունացող խնձորների և դառնավուն աստղածաղկի հոտով: Տանը սպասում են եղբայրներն ու քույրերը, ուրախ խաղերը, մինչև ամենահետաքրքիր մասը կարդացած գիրքը, «հսկայաքայլերը» բակում: Իսկ երեկոյան կվերադառնա հայրիկը, և այդ ժամանակ նրան հպարտությամբ կարելի է ցույց տալ օրագիրը, որի մեջ կարմրին են տալիս հաստատուն և կլոր «հինգերը»:

Ճանապարհին Վոլոդյան թեքվեց դեպի աղջիկների գիմնազիան, սպասեց մինչև Օլյան դուրս վազի:

— Դե, ինչպե՞ս են գործերդ,— սովորականի նման հարցրեց եղբայրը:

Օլյան ուրախ թափահարեց գլուխը, որից նրա հյուսը պիրկ ձկան նման օդում մի կիսաշրջան գծեց:

— Պատմությունից «տասներկու» և ֆիզիկայից էլ նույնը,— ասաց նա բարակ ու գեղեցիկ ձայնով:

— Իսկ ես լատիներենից «հինգ» եմ ստացել,— ասաց Վոլոդյան:

«Հինգը» բարձրագույն գնահատականն էր տղաների գիմնազիայում, իսկ «տասներկուսը»՝ աղջիկների:

Ձեռք-ձեռքի տված, քույրը և եղբայրը, կոշիկներով թխթխկացնելով փայլուն մայթին, ներքև սլացան Պոկրովսկու փողոցով:

— Գիտե՞ս, թե ինչպես էի անհանգստանում ֆիզիկայի համար,— հանկարծ կանգ առավ Օլյան:— Նստել եմ նստարանին և ոչինչ չեմ հիշում, իսկ երբ ուսուցչուհին կանչեց գրատախտակի մոտ, գլուխս ամեն ինչ կարգավորվեց: Ա՜խ, որքան ուրախ եմ, որ չեմ կտրվել:

— Բայց չէ՞ որ երեկ ֆիզիկադ լույսի տակ կրկնեցիր,— ծիծաղեց Վոլոդյան:— Ես պատշգամբ դուրս եկա և տեսա ինչպես էիր դու ապակու վրա մատով բանաձևեր ստանում:

Վոլոդյան բարի նախանձ էր տածում քրոջ նկատմամբ: Ահա, թե ով կարող էր քրտնաջան աշխատել:

— Մեզ ինչ-որ մեկը սպասում է դռնակի մոտ:

Վոլոդյան կկոցեց ձախ աչքը:

— Այո, ինչ-որ պատանի է:

Մոտեցան: Ցանկապատի մոտ կանգնած էր մոտ տասներկու տարեկան մի տղա, Վոլոդյայի հասակակից: Երևում էր, որ նա հեռվից է եկել. տրեխները բոլորովին մաշված են, երկար բաճկոնը ծած-

կրված է փոշով, միջքին բարշ է գալիս տոպրակը։

— Դու մե՞զ մոտ ես եկել,— հարցրեց Վոլոդյան։

— Ես եկել եմ գլխավոր ուսուցիչ Ուլյանովի մոտ։ Ինձ ասացին, որ նա այստեղ է ապրում։

— Այստե՛ղ, այստե՛ղ,— աշխուժորեն հաստատեց Վոլոդյան։— Ինչո՞ւ ներս չես մտնում։

— Վախենում եմ։ Հայրս ասաց, որ Սիմբիրսկի յուրաքանչյուր բակում կատաղի շուն կա։

— Մեզ մոտ ոչ մի շուն էլ չկա։ Մտի՛ր, մտի՛ր,— Վոլոդյան բացեց դռնակը։ Օլյան առաջինը խցկըվեց և առաջ վազեց։— Միայն հարկ կլինի սպասել հայրիկին. նա երեկոյան կվերադառնա։— Ինչի՞դ է նա հարկավոր,— հետաքրքրվեց Վոլոդյան։

— Դպրոց պետք է գնամ սովորելու։

— Ի՞նչ է անունդ։

— Իվան։

— Ծանոթանանք. իմ անունը Վոլոդյա է, քրոջս՝ Օլյա։

— Քո հայրը բարկացկո՞տ է,— հարցրեց Վանյան և դանդաղեցրեց քայլերը։

— Ինքդ կտեսնես։

Մայրիկն ու Օլյան ճաշի պատրաստությունն տեսան տաղավարում, իսկ Վոլոդյան ու Վանյան գնացին ցախատուն լվացվելու։ Տակառիկից ջուր վերցրին, որ տաքացել էր արևից։ Վանյան հետաքրքրությամբ նայում էր, թե ինչպես է Վոլոդյան օճառում իր գլուխը և ինչպես է նրա մազերի տակ ձյունե գլխարկ առաջանում։ Վանյան էլ ցանկացավ այդպիսի գլխարկ ունենալ։ Նա երբեք օճառ չէր տեսել և չգիտեր դրա կախարդական հատկությունները։ Վոլոդյան փնչացնում էր, Վանյան էլ փնչացնում էր։ Վոլոդյան ջուր էր լցնում իր վրա, Վանյան էլ էր լցնում։ Իսկ հետո, լվացված, մաքրված, գործարար կերպով զննում էր իրեն՝ հագած Վոլոդյայի բաթիստե շալվարն ու գորշ վերնաշապիկը։

Ճաշի ժամանակ մայրիկը Վանյայի ափսեի մեջ դրեց ամենամեծ կտորները։ Վանյան ագահորեն ուտում է և պատմում, որ ինքը դեռևս վաղուց՝ գարնանից, որոշել է սովորել։ Իսկ հայրիկը չի թողնում, ասելով, որ բուրլակին[1] ուսում հարկավոր չէ։ Բուրլակն աղքատ է, եթե շատ բան իմանա, չի սիրի իր ապրելակերպը։ Վանյայի հայրը բուրլակ է, պապը ևս բուրլակ է եղել, իսկ Վանյան ուզում է ուսուցիչ դառնալ։ Մարդիկ ասացին, որ պարապմունքները դպրոցում սկսվում են աշնանը՝ տերևների դեղնելու ժամանակ։ Վանյան էլ ահա սպասեց, մինչև պատուհանի տակի կեչու տերևները դեղնեն։ Գիշերը նա գաղտագողի հեռացավ տանից։ Գնաց դպրոց փնտրելու։ Շատ գյուղեր անցավ, ոչ մի տեղ դպրոց չգտավ։ Մարդիկ ասացին, որ հարկավոր է գնալ Սիմբիրսկ, գլխավոր ուսուցիչ Ուլյանովի մոտ, նա կօգնի...

Վոլոդյան, առաջ թեքված և ունքը կիտած, ուշադրությամբ լսում էր, հոնքերը շարժելով, և միայն կամացուկ արտասանում էր. «Հը՛մ... հը՛մ... այո... այո...»

Ճաշից հետո Վոլոդյան և Օլյան Վանյային տարան վերև, իրենց սենյակը, նրան ցույց տվեցին պատկերազարդ գրքույկներ։

— Ահա՛ և աստվածաշունչը,— բացականչեց Վանյան՝ զննելով մի գիրք։

— Ինչ աստվածաշունչ,— մռնչաց Վոլոդյան։— Սա «Քեռի Թոմասի խրճիթն» է։ Աշխարհի ամենալավ գիրքը։

— Ոչ, աստվածաշունչն է,— պնդում էր Վանյան։— Ես ինքս եմ այդ գրքից տեսել եկեղեցում, միայն ավելի գեղեցիկը։

Քույր ու եղբայր հայացքներ փոխանակեցին։ Նրանք հասկացան, որ տղան երբեք ձեռքին գիրք չի բռնել։ Վոլոդյան հուզված էր։ Ինքը Վանյայի հասակակիցն է և հասցրել է կարդալ բազմաթիվ գրքեր, իսկ այդ կախարդական աշխարհը փակ է տղայի համար։

Վանյան ձեռքերի մեջ շուռումուռ էր տալիս գիրքը, թերթում այն, շոշափում ինչպես կույրը, և նրա աչքերը կենդանանում էին, երբ նկարի էր հանդիպում։

— Ուզո՞ւմ ես կարդալ,— առաջարկեց Օլյան։

Վանյան լսում էր և հետևում Օլյայի մատին։ Նրա մատը շարժվում էր ակոսաձև տողերի վրայով, և բոլոր ակոսները միատեսակ էին, իսկ յուրաքանչյուր թերթը նման էր խնամքով վարած դաշտի։ Ինչպե՞ս է այս աղջիկն ակոսների մեջ տեսնում այդքան հետաքրքիր պատմություններ, և ինչո՞ւ որքան էլ ինքը լարում է աչքերը, դրանցից ոչինչ չի հասկանում։

Վոլոդյան նստած էր նրանց կողքին և աշխատում էր խորանալ յամբիկների մեջ։ Ու չէր կարողանում։ Նրան ճնշում էր իրենից գոհ չլինելու անորոշ զգացումը, ինչ-որ միտք, որն իրեն մեղավոր էր դարձնում Վանյայի առաջ։ Հայրը երեխաներին հաճախ էր պատմում գյուղերում տիրող սարսափելի աղքատության և անօրինությունների մասին։ Իսկ այժմ Վոլոդյան ինքն էր դա լսում տղայից։ Ինչո՞վ ուրախացնել Վանյային։ Նվիրե՞լ իր սիրելի գի՞րքը։ Բայց Վանյան կարդալ չգիտի։ Տա՞լ իր գանձե՞րը՝ գրչածայրերի հավաքածուն։ Բայց նա գրել չգիտի...

[1] Հեղափոխությունից առաջ Ռուսաստանում այդպես էին կոչվում նավերը ափով քաշող բանվորները։

Երեկոյան վերադարձավ Իլյա Նիկոլաևիչը։ Նա ներկա էր եղել ամառային երկու նոր դպրոցների բացմանը, ուշ էր եկել հիանալի տրամադրությամբ։



Նկ. ՄԻՀՐԱՆ ՍԱՍՈՒՆՅԱՆԻ

— Հայրիկ...— ուզում էր պատմել Վոլոդյան, բայց հայրն ամեն ինչ իմացել էր մայրիկից։

— Մենք կխոսենք երիտասարդի հետ, իսկ դու գնա քո սենյակը։

Օլյան և Վոլոդյան նստեցին սենյակի վերին մասում դրված սնդուկին, անհամբերությամբ սպասելով հոր որոշմանը։

Վանյան առանձնասենյակից դուրս եկավ երջանկացած։ Նա ոչինչ չէր ասում, միայն ծիծաղում էր։ Ծիծաղում էին նրա աչքերը, շրթունքները և նույնիսկ կնճռոտված քթի ծայրը։

Վոլոդյան վազեց հոր մոտ.

— Հայրի՛կ, ինչ լավ է, որ դու վճռեցիր Վանյային դպրոց ուղարկել։ Նա այնքան երջանի՜կ է։

— Ո՛չ,— պատասխանեց Իլյա Նիկոլաևիչը,— նա ուշացել է, իսկ երեխաները շատ առաջ են անցել։

— Բայց էլ մեկը չի ուշացել։ Նրանք ասել են, որ պարապմունքները դպրոցում սկսվում են այն ժամանակ, երբ դեղնում են ծառերի տերևները։ Եվ ահա նա սպասել է, իսկ հիմա դպրոց փնտրել։ Տղան Սիմբիրսկ է հասել երկու օրում։ Մի՞թե կարելի է, որ նա անարդյունք տուն վերադառնա։— Վոլոդյայի աչքերի առաջ կանգնեց Վանյայի մրատացող դեմքը։— Հայրիկ, մի՞թե չես ուզում, որ նա սովորի։

— Ինքդ էլ հասկանում ես, որ ամբողջ դասարանը մի աշակերտի պատճառով չի կարելի ետ պահել։— Իլյա Նիկոլաևիչը ուշադրությամբ նայեց որդուն։

Հանկարծ Վոլոդյան բռնկվեց, այտերը կարմրատակեցին, աչքերը փայլեցին։ Նա մոտեցավ հորը.

— Նա կհասնի, հայրիկ, մենք կօգնենք նրան՝ ես և Օլյան։ Ես խոսք եմ տալիս։

Իլյա Նիկոլաևիչի ճակատի կնճիռը հարթվեց, թանձր հոնքերը վեր բարձրացան, շուրթերը դողացին ժպիտի մեջ.

— Ահա հենց դա էլ սպասում էի քեզանից։ Ես կխնդրեմ, որպեսզի Վանյային դպրոց ընդունեն։

Վոլոդյան հուզմունքով գրկեց հորը և սլացավ վերև...

Այգու վրա կախված էր լուսնի մանգաղը, երկնքում լողում էին ամպերը՝ իրենց հետևում թողնելով ցրված աստղերին։ Այգու հսկա կեչիները լուսաճաճանչներն սարսռած ճյուղերով կարծես քերում էին երկինքը։

Վոլոդյան պատշգամբում կանգնած, ձեռքով կառչել էր բազրիքից։ Պատշգամբ բարձրացավ Օլյան.

— Ես հայրիկին ցույց տվեցի օրագիրս,— նա նայեց ֆիզիկայի «ատեստատին» և ասաց. «Սա դեռևս ամենալավ գնահատականը չէ»։ Իսկ ո՞րն է ամենալավը, Վոլոդյա.— Օլյան նայեց եղբոր դեմքին։

— Ինչի՞ մասին ես դու մտածում։

— Վանյայի... Լսո՞ւմ ես,— Վոլոդյան ձեռքով ներքև ցույց տվեց։

Բակի միջով, լուսնի շողերով լուսավորված շավիղով քայլում էին հայրիկը, մայրիկը և ամաչ-

ները՝ Անյան ու Սաշան: Իլյա Նիկոլաևիչը սրտանց ծիծաղում էր, և, փոքրիկ զանգակի նման, զրնգում էր մայրիկի ձայնը:

— Լսո՞ւմ ես, — կրկնեց Վոլոդյան: — Հայրիկը պատմում է Վանյայի մասին և այնպես է ուրախանում, ասես նոր դպրոց է բաց արել: Ես էլ կուզենայի այդպես ուրախանալ:

Վոլոդյան բռնեց Օլյայի ձեռքից.

— Ես գիտեմ, գիտեմ, թե ինչ բան է յուրաքանչյուր գնահատականը: — Օլյան նայեց եղբորը, նրա շողացող դեմքին: — Իմ ու քո յուրաքանչյուր գնահատականը կլինի Վանյայի առաջին «հինգը»: Ճի՞շտ է:

Վոլոդյան ցած թռավ բազրիքից և պատուհանից ներս նայեց:

Վանյան քնած էր՝ երկու ձեռքով ամուր բռնած «Քեռի Թոմասի խրճիթը», որը Վոլոդյան նվեր էր տվել ուսման մեջ ունեցած առաջադիմության համար:

Թարգմ. ԱՐԱ ՍԱԿԵՐՋՅԱՆ

# Այգու պապը

ՌԱՖԱՅԵԼ ԱՐԱՄՅԱՆ

Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ

Երբ ուռինները կանաչում էին, նա կապում էր բոխչան ու ասում.

— Ստեփան, ես այգի եմ գնում:

Հայրս չէր առարկում: Բարձրանում էր տեղից ու նայում դուրս: Բակում մենք ուռենի ունեինք:

— Մայրիկ, դեռ տերևը չի երևում:

— Բա որ տերևը չի երևում, ինչի՞ց է ծառը կանաչ:

Հայրս ինքն էլ չգիտեր, թե ինչից է ծառը կանաչ, երբ դեռ ճյուղերը չեն տերևակալել:

— Էդպես է, գարնան օդը ծառի ճյուղերի մեջ կանաչ է թվում, — ասում էր հայրս: Հետո նրանք երկուսով՝ տատս ուտեստի բոխչան, իսկ հայրս՝ տատիս անկողինը թևի տակ, այգի էին գնում: Ու մենք տատիս էլ չէինք տեսնում մինչև թթերը հասնեին, մինչև սարյակները վերադառնային:

Վաղ գարնանը նա այգի էր գնում ու մեկ էլ երևում էր խոր աշնանը, դրա համար էլ մենք նրան այգու տատ էինք անվանում:

Այն ժամանակ ամեն անգամ զարմանում էի, թե ինչու տատս այնքան շուտ է այգի գնում, իսկ հիմա, երբ մեծացել, տարիք եմ առել, հասկանում եմ, որ այգու պատերի տակ այդ ժամանակ մանուշակներն են արդեն դուրս գալիս, խաղողի թմբերի մեջ սիբեխն ու սինձն են զոխ ձգում, ու տատիս համար թերևս այս բոլորը թանկ բաներ էին, շատ թանկ բաներ: Հայրս ամեն օր գնում էր մորը տեսության և երբ վերադառնում էր, իր հետ մի կապոց սիբեխ, մի փունջ մանուշակ էր բերում, դնում էր սեղանին ու ասում.

— Այգու տատն է ուղարկել:

Հիմա երբ հիշում եմ տատին և կամ նրա անունն եմ տալիս, թվում է, թե մանուշակի հոտ եմ առնում ու հողաբույր սիբեխի համ:

Թթի ժամանակ մենք նույնպես այգի էինք գնում: Եվ որովհետև երկու ամիս տեսած չէինք լինում տատիս, նա ամեն անգամ ինձ ավելի ծեր էր թվում:

— Ստեփա՛ն, ա՛յ Ստեփան, — կանչում էր նա այգու ծայրից, և որովհետև հորս ու իմ անունը Ստեփան է, մենք երկուսով կատակի համար միասին բղավում էինք.

— Ի՞նչ կա:



Իսկ նա ճշտում էր.

— Փոքր Ստեփանի հետ եմ: Ա՛յ տղա, մի արի՛. ես քեզ բան եմ ցույց տալու:

Գնում էի: Տատս ինձ ցույց էր տալիս ծառի վրայի թռչունի բույնը, հետո ցույց էր տալիս պատի տակի մրջնանոցներն ու ասում.

— Չքանդես, ոչ մեկին ձեռք չտաս: Այգին նրանով է այգի, որ այստեղ ամեն մեկը իրավունք ունի ապրելու:

Մինչև հիմա էլ հիշում եմ նրա խոսքերը և հասկանում, որ հենց այս պատճառով էլ տատս բոլորից շուտ էր այգի գնում և բոլորից ուշ վերադառնում, որ ոչ ոք չքանդի թռչունի բույնը:

Այգու տան պատերին, որ որձաքարից էին շարված, ծիծեռնակի բներ կային, և տատս, երբ ծիծեռնակները ձագեր էին հանում ու սկսում էին կերակրել, թթենու ստվերում նստած ասում էր.

— Ջա՜ն, ջա՜ն, ձեր ձայնին մեռնեմ, բարով ամեն տարի ձագով մնաք մեր աշխարհում:

Եվ ես որովհետև դպրոց էի գնում ու կարդացել էի չվող թռչունների մասին, ասում էի.

— Տատ, ա՛յ տատ, ծիծեռնակները չեն մնում, ծիծեռնակները գնում են:

— Չէ, որդիս, ծիծեռնակները չեն գնում, ես որ աշնանն այգուց գալիս եմ ու գարնանը՝ վերադառնում, հո այգուց չեմ բաժանվում: Ձմեռը տանը նստած միտքս ծառերի, թփերի հետ է, ինքս ինձ անընդհատ մտածում եմ՝ հիմի, տեսնես, թըմբերում ապրող նապաստակն իր ձագերի հետ տանձենու բունը չկրծոտե՞ց արդյոք:

Ու տատս պատմություններ էր անում ձմռան այգու մասին, թեպետ երբեք ձմռանը այնտեղ չէր եղել և ոչ ոք չէր լինում: Ու ես նրա ծնկների մեջ թաղված լսում, պատկերացնում էի թմբերի մեջ ապրող նապաստակին ու իր ձագերին, շատախոս կաչաղակներին և սևազգեստ ագռավներին, որ երևի հանգստանում էին ամայի հնձանի տանիքի վրա:

— Յաո, ա՛յ տատ, — ասում էի, — իսկ նրանց տամների հետքերն ինչպիսի՞ն են:

— Ու՞մ:

Նապաստակների:

Հուլունքի նման: Այ, որ տանձենու բնին հուլունքի նման բաներ տեսնես, ուրեմն նապաստակն է ձմեռը կրծել:

Եվ ես ամռանը ծառերի բների վրա հուլունքի նման բաներ էի փնտրում:

Այսպես ապրում էր այգու տատը: Ամռանը թըմբից-թումբ էր գնում, հետևում էր այգուն, իսկ ձմռանը՝ վառարանի մոտ նստած, պատմություններ էր անում ու մտածում, թե հանկարծ նապաստակները չկրծեն ծառերի բները:



Տարիներ անցան, այգու տատը մահացավ: Հետո մեր այգին փողոց դարձավ: Լայն ու ասֆալտապատ փողոց, ուր տղայիս հետ հաճախ զբոսնում եմ ես: Տղաս հիմա այն տարիքին է, որքան ես էի, երբ տատս կենդանի էր ու ինձ ծնկների մեջ առած պատմություններ էր անում:

Քայլում ենք փողոցով և չգիտեմ ինչու հանկարծ պատմում եմ նրան իմ մանկության օրերի և նապաստակների մասին, որ ձմռանը կրծոտում էին ծառերի բները, հետո պատմում եմ շատախոս կաչաղակների և ծիծեռնակների մասին, ու տղաս հարցնում է.

— Հայրիկ, դրանք որտե՞ղ էին ապրում:

Ուզում եմ ասել հենց այստեղ, այս ասֆալտապատ փողոցում.

ուր մի այգի, որձաքարից մի հնձան և այգու տատ կար, բայց ասում եմ.

— Հեռու տեղերում:

— Տար ինձ նրանց մոտ,— ասում է տղաս ու ասֆալտի ճեղքից դուրս եկած խոտի ծիլը նկատելով կռանում է.

— Սա ո՞վ է:

— Քաջ Խաչիկն է,— ասում եմ ես, որովհետև տղաս ամեն ինչին անուններ է դնում: Ասում ու մտածում եմ մեր այգու մասին, որի կանաչ ծիլերից է թերևս այս խոտը, ասֆալտի ճեղքից դուրս եկած այս փոքրիկ խոտը: Տղաս ուզում է պոկել: Իսկ ես չեմ թողնում, բացատրում եմ.

— Չի՛ կարելի, թող մնա, այգու տատը կբարկանա:

Տղաս չգիտի, թե ով է այգու տատը, բայց ամեն մի ծաղիկ կամ խոտ նրա կարծիքով տատի սեփականությունն է ու չի կարելի պոկել, փչացնել:

— Ես չեմ ուզում պոկել, ես ուզում եմ, որ այստեղից մի ուրիշ տեղ տեղափոխենք, որ ոտքի տակ չընկնի ու այգու տատը չվշտանա:

— Ոտքի տակ չի ընկնի, տատը կպահի, կպահպանի նրան:

Այսպես եմ ասում ես ու հրաժեշտ տալով փոքրիկ, շատ փոքրիկ, հազիվ մոմի բոցի չափ քաջ Խաչիկին, տղայիս հետ քայլում եմ փողոցով, ուր մի ժամանակ մեր այգին էր, որձաքարից հնձանը, իսկ հնձանի առջև, թթենու ստվերում, գոգնոցը լիքը մրգեր ու հեքիաթներ, նստում էր այգու տատը: Ու ինձ թվում է, թե նա՝ տատս կանչում է հեռվից.

— Ստեփա՜ն, ա՛յ Ստեփան, արի այստեղ, տես, հանկարծ ձեռք չտաս թռչունի բնին ու չքանդես մրջնանոցները: Այստեղ այգում ամեն մեկն իրավունք ունի ապրելու, չքանդես, մեղք է...

## ՁՄԵՌՆԱՄՈՒՏ

### ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ

*Մուժը ծածկեց արևը ջինջ,*
*Ծիլ ու ծաղիկ մտան խոր ննջ,*
*Լռեց առուն, լռեց գետը,*
*Փակվեց բանուկ արահետը:*

*Հանդ ու այգի եղյամ հագան,*
*Երգիչ հավքերն արդեն չկան,*
*Հողմն է միայն այնտեղ պարում,*
*Ձմռան գալուստն ազդարարում:*

## ԳԻՇԵՐԸ ԱՅԳՈՒՄ

### ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆ

*Գիշեր է աշնան այգում,*
*Գիշեր է խաղաղ ու խոր,*
*Դողում են այգու խորքում*
*Ծառերը մերկ ու տկլոր:*

*Ու քամին խենթ ու մոլոր*
*Փչում է կողքի ձորից,*
*Լուսինը, դեղին խնձոր,*
*Կախվել է ծառի ճյուղից:*



# «Արվեստագետը»

ԶՈՒԼԻԵՏԱ ՄԱՏԻՆՅԱՆ

Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Ամառ է։ Տոթը չոքել է տների բակերում, հաղթել է անգամ ծառերին։

Իմ ընկեր Բենիկը մորն ասաց.

— Գնում եմ պապիկի մոտ, ճամբար չեմ ուզում։

Մայրը չմերժեց։

— Լավ, սպասիր, մի շաբաթից կտանեմ։

Ես սիրում եմ Բենիկին։ Նրան նայելիս մի տեսակ քաջություն է գալիս վրաս։ Ճիշտ իմ հակապատկերն է։ Այս էլ ասեմ՝ նոր ենք ծանոթացել։

Մի օր մեր բակի տղաները հավաքվել վիճում էին, թե ով կանցնի ջրանցքը. որից, ի միջի այլոց, վախենում եմ։

— Է՛, բա որ անցա ու խեղդվեցի՛,— միամիտ վրա բերեց Գառնիկը։

— Քո բաժին պաղպաղակը մենք կուտենք,— քրքջացին տղաները։

Գառնիկը ականջը քորելով ետ քաշվեց։

Այդ միջոցին խմբին մոտեցավ մի սիրուն տղա, մազերը ոզնու փշերի պես ցցված։

— Քանի՞ մետր է խորությունը,— հարցրեց, քիթը վեր տնկելով։

— Վեց,— պատասխանեց Գառնիկը մի տոնով՝ որից նորեկը մի փոքր վախեցավ։

Հետո նա նայեց տղաներին, վճռական մի շարժում արավ և արագ-արագ հանելով շորերը՝ նետվեց ջուրը։ Տղաները մեկեն իրար նայեցին։

Ես սարսռեցի՝ տեսնելով նրա ձգված մարմինը օդի մեջ։ Մենք շունչներս պահած սպասում էինք, թե երբ կերևա նրա փոքրիկ գլուխը պղտորված ջրում։

— Վա՜յ, խեղդվե՜ց,— ճչացի կպչելով պատին։

— Չէ՛ մի... հիմա կանցնի,— վստահ ու լուրջ ասաց Գառնիկը։

Իսկապես, նորեկը դուրս եկավ ջրի երես, ձեռքերով մի քանի վարժ շարժումներ արավ և հասավ մյուս ափը։

Տղաները սսկվել էին։ Նորեկը մյուս ափից թափահարեց ձեռքը և, աքաղաղի նման ծուլ-ծուլ լինելով, ետ եկավ մեզ մոտ։ Նախանձից լռած տղաների խումբը մի կողմ քաշված դիտում էր։

Էլի ամենահամարձակը մեզնից Գառնիկն էր։

— Երևում է, լավ լողալ գիտես, ծանոթանանք։

— Արի՛,— մի տեսակ ծոր տվեց աքաղաղի նման քայլող տղան։— Բենո, կողքի բակից եմ։

— Իսկ ես լավ նվագել գիտեմ,— մեկեն վրա բերեց Գառնիկը՝ նախանձից կկոցած աչքերով։

Ճիշտ է, որ Գառնիկը լավ ակորդեոնիստ է՝ մենք շատ ենք լսել նրա նվագը։

— Դա՛հ, մեծ բան է, ես էլ եմ արվեստագետ։

— Ի՞նչ,— չհասկացավ Գառնիկը։ Ընդհանրապես նա բարդ բառերը ուշ է ընկալում։

— Է՛, ոչ մի բան չեք հասկանում, դե ասենք, նկարիչ։

Նրա նկարիչ լինելն իմանալուն պես՝ ավելի մոտեցա նրան։ Ես նկար ու նկարվել շատ եմ սիրում, սուլելուց էլ շատ։

— Իսկական նկար ես անու՞մ, թե՞ հենց այնպես,— քննում էր ճտվտան Գառնիկը։

— Ոնց թե՝ հենց այնպես, պիոներների պալատում նկարիչ եմ։

Գառնիկը բերանն էր բացել, իսկ ես զգացի, որ գործ ունեմ չափազանց լուրջ տղայի հետ։

Հետո մի պահ ոտից գլուխ չափելով ինձ՝ գտա, որ ես էլ լուրջ եմ։ Ծանոթացանք։

Այդ օրվանից մտքիցս չէր հեռանում նկարվելու ցանկությունս։ Որքան ես շտապեցնում էի Բենիկին, այնքան նա ծուլորեն նույն խոսքն էր ասում.

— Վա՜յ, կգնանք գյուղ, կնկարեմ, է՛լի։ Նկարչին հանգիստ է պետք, խոհեր...

Այսքանից հետո ինձ մնում էր համաձայնել ու սպասել։

Մայրս հիմա ուրախացել էր, որ ընկերություն եմ անում Բենիկի պես համարձակ, լուրջ ու խելացի տղայի հետ:

Եվ այսպես՝ մենք որոշեցինք ամռան կեսին գնալ գյուղ:

Ամեն ինչ մեր ուզածի պես լավ էր գնում:

Գյուղում պապիկիս տունը ժայռի վրա էր, իսկ ժայռի տակ ծործորն էր ու վշշացող գետը: Ննց որ նկար: Մի խոսքով՝ կարող էի երազել, օրերով կորչել անտառում, հեքիաթներ հորինել:

Առաջին օրը ոտնատակ տվինք գյուղը, հետո իջանք ձորը, թափառեցինք՝ մինչև աստղերը մեկիկ-մեկիկ կախվեցին երկնքից, իսկ հետո պապն էլ հազիվ գտավ մեզ ու խրատներ կարդալով տարավ տուն: Ոչ դաս կար սովորելու, ոչ թվաբանության խնդիր, առավոտից իրիկուն թափառիր հանդերում, սուլիր, ինչ ուզում ես, վազիր, ինչքան կարող ես:



Գիշերը խոր քնեցի, երազ չտեսա, իսկ առավոտյան լուսամուտից կախված արևը աչքով անելով դուրս էր կանչում՝ հասիր...

Դուրս թռա տնից: Այգու ծայրին Բենիկն սպասում էր ինձ: Նախորդ երեկո մենք որոշել էինք գնալ ավերակ բերդը, որ թառել էր Կոթ քարի գլխին: Ավերակ բերդի չորս կողմի ժայռերը ասես տաշած լինեին: Բենիկը ձեռքը ճակատին դրած ուշադիր զննում էր կիսաքանդ պարիսպը: Նրանց [illegible] ինչ-որ հին-հին գրեր կային՝ անհասկանալի ու [illegible]ղեղծվածային:

— Կարելի է նկարել, ներշնչում է,— մի տեսակ ձայնը փոխեց Բենոն:

— Լսիր,— վրա բեռեցի ես,— ինձ էլ բերդի ավերակների վրա փորագրիր, ոնց որ պատմության հերոս:

— Կոմպոզիցիան լավ չի լուծվի,— ձեռքը ճակատից իջեցնելով՝ պատասխանեց նա:

— Ի՞նչ, նորից չհասկացա ես,— հայերեն ասա:

— Ասում եմ հետո կնկարեմ,— վրա տվեց Բենոն,— մի քանի օր դեռ պետք է գծեմ դեմքդ, որ ձեռքս վարժվի:

— Ինչ կա որ՝ գծիր, - պոկ չէի գալիս ես:

Այդ օրվանից մեր Բենիկը սկսեց իմ դեմքը գծմծել պատահած քարերի վրա, իսկ ես հպարտությունից փայլում էի:

Մի սովորական օր էլ, երբ նորից բերդին հյուր էինք եկել՝ նա ասաց.

— Լսիր, Վաչիկ, թուղթ չեմ բերել, ոչ էլ ներկապնակ, դու մի մեծ կտոր ածուխ ճարիր, կարգին փորձեմ:

Ծտի պես թռա... Ինչ լավ է, վերջապես նա պետք է ինձ կարգին նկարեր:

Ավերակի մոտերքում հովվական մոռացված օջախներ կային: Գրպանս լցրի ածուխներով, մի խոշոր կտոր էլ բռնած ձեռքիս՝ սկսեցի վազել:

— Ահա, բերեցի,— ձեռքիս ածուխը հևալով մեկնեցի նրան,— շատ բերեցի, որ չասես՝ քիչ է:

Բենիկը ածուխի մի կտորը մաշեց չեչոտ քարերին քսելով, հետո մյուս կտորով սկսեց նկարել ինձ:

— Կանգնիր զգաստ, չխոսես, մի կետի նայիր և քարացիր:

Ինչ արած, որ շատ եմ ուզում նկարվել, պետք է «քարանամ»:

*Մի քանի երեխաներ, որ դաշտում գառներ էին պահում, հետաքրքրությունից մոտեցել էին մեզ:*

*Բենիկը ստեպ-ստեպ ինձ նայելով մի քանի վարժ գիծ քաշեց: Նա չէր էլ նայում երեխաներին: Ես վիզս ձգած սպասում էի, թե երբ կասի, որ վերջացրեց: Երկար մի կետի նայելուց աչքերս ջրակալվել էին: Արևն էլ անտերեսի պես այրում էր:*

*Մի խոսքով՝ իսկական տանջանք:*

*«Հետո ինչ», — մտածեցի ես, — համենայն դեպս, պատկերս կլինի ավերակի վրա»: Այս միտքը թևավորեց ինձ:*

*Երբ համբերությունս հատել էր, նա հևալով ասաց ինձ.*

*— Հիմա նայիր, բայց էլի մշակելու գործ կա:*

*Ջրակալված աչքերս հառեցի նկարին. մի կլոր շրջան, աչքերիս տեղը նորից շրջաններ, քիթս մաշված շեշտ, շուրթերս հավասարման նշան, իսկ ականջներս, չեմ էլ հիշում, ջարդված կաթսայի ծռված բռնակներ: Մի խոսքով՝ մի այլակերպ նկար:*

*Վիզս ծուռ, դեմքիս մի կիսատ ժպիտ ես նայում էի նրա նկարածին:*

*Երեխաները, որ մինչ այդ լուռ նայում էին՝ մեկեն սկսեցին ծիծաղել:*

*— Դա՜հ, ծմերուկ է նկարել:*

*— Ինչ է, չե՞ք հավանում,— ինչպես միշտ, աքաղաղի պես վրա պրծավ կարմրած Բենոն:*

*Երեխաների ծիծաղն ավելի սաստկացավ, իսկ հեռվից մայում էին գառները:*

*Բենոն խռոված դեն շպրտեց կիսամաշ ածուխը և իրենից փոքրերին վախեցնելու համար բռունցքներ ցույց տալով՝ առաջ եկավ:*

*— Շատ էլ նման է, Բենիկ, գնանք,— ասացի ես ու ծռված վիզս ուղղելով՝ քաշեցի նրա թևը:*

*Բենիկը թափով ազատվեց ինձնից ու հեռացավ:*

*— Հազիվ թե հասկանան այդքանը, անգրագետներ,— փնթփնթում էր նա քթի տակ:*

*Ճիշտ է, որոշ բաներում համաձայն չէի նրա հետ, բայց չէի վիճում: Ընդհանրապես չեմ սիրում անօգուտ վիճելը, այն էլ սիրած ընկերոջ հետ: Հասա հեռացող Բենիկին: Ես չէի նկատել, իսկ Բենիկը ցույց տալով դեմից եկող մորուքավորին ճամփից ետ քաշվեց: Մարդը լուսանկարչական ապարատով էր, օբյեկտիվը բացած: Նա անցավ՝ չնկատելով մեզ ու հասավ առաջվա մեր կանգնած տեղը: Միայն նոր սթափվելով, նայեց շուրջը, նկատեց և մեզ ու խոյակի վրայի ածխանկարը: Հետո հանդիմանանքով մաքրեց այն: Ճերմակ թաշկինակը ամոթի պես սևացավ:*

*Ես ուրախացա «մաքրված» պատկերիս համար:*

*Բենոն անտարբեր շվշվացնում էր:*

*— Դե, սա առաջին իսկական փորձն էր, հետո ավելի հաջող կլինի, մեծ նկարիչների հետ էլ է պատահում,— խոսում էր՝ իրեն մխիթարելով:*

*Ես նայում էի անծանոթ մարդուն, որը թաշկինակով երկար ժամանակ մաքրում էր այդ քարի փոշին: Հետո նա հանեց ծոցատետրը և դողդոջուն ձեռքով արտագրեց քարի վրա փորագրված բառերը:*

*Ռոպեաչափ լռությունն ինձ ժամեր թվաց:*

*Ես կաշկանդվել էի ինչ-որ զգացումից, կոկորդս խուտուտ էր գալիս:*

*Մենք դեռ երկար նայում էինք բերդի համեստ խաչքարերին, իսկ Բենոն՝ իր կոշիկներին:*

*Գառնարածները գնացել էին: Ձորում աղմկում էր Սևդու գետակը, պապիս տունն էլ հարցականի պես կախված էր ձորապռնկին:*

# Ա Ն Տ Ա Ռ - Ա Յ Գ Ի

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

ԳԱԲՐԻԵԼ ԱՐԵՎՅԱՆ

Դավիթբեկ է կոչվում գյուղը, լեգենդար դյուցազնի անունով: Մեկնել է ոտքերը հեռու, հասցրել Ծաղկագետի ափերին, ուր տարվա ինն ամիսներին կանաչներն օրորվում են, բուրում: Այդտեղ իրենց տարերքի մեջ են որթատունկը, թզենին, դեղձենին, ծիրանենին, նռնենին:

Սակայն Դավիթբեկի հպարտության ակունքը Կարմրաքարից է բխում:

Կարմրաքար՝ Ուր հայացքդ դարձնում ես՝ անմոռուկ է, դեղնածաղիկ, նարգիզ, մարգարտածաղիկ, անթառամ երիցուկ, բաղեղածաղիկ, վայրի բազմագույն վարդեր...

Ամեն օր, հենց վաղ առավոտյան, նուրբ ու փափուկ ծաղկագորգը կոխոտելով, այստեղ են գալիս Դավիթբեկի երեխաները, վայելում կախարդական գորգերի հրապույրը: Հեռանում ես այդ ծաղկաշխարհից, մտնում անտառ: Արծաթաշող եղևնիներն են քեզ դիմավորում, որ ամենուրեք այնքան հազվագյուտ են, իսկ այստեղ պուրակ են կազմում:

Շարունակում ես խորանալ, հասնել այստեղի

անտառներին բնորոշ կաղնին, բոխին, հացենու անտառներից: Տեղ-տեղ ծառաստվերախիտ ծառաստաններից: Տեղ-տեղ ծառաճյուղերն ավելի խիտ են, այնքան խիտ, որ երկնքի կապույտը բոլորովին չի նշմարվում:

— Միշտ այս կածանով ենք կարմրաքար գնում,— մի օր ընկերոջն ասաց Հակոբը՝ սև գանգուրները խառնելով:— Մի անգամ էլ թեքենք մեր ճամփան, ուրիշ տեղով գնանք, տեսնենք այնտեղ ինչ կա:

— Կշփոթվենք, կխճճվենք: Կարծում ես, որ ուրիշ տեղով հնարավոր լիներ, մեր ծնողներն այնտեղ չէի՞ն գնա,— պատասխանեց Զավենը՝ անբավականությամբ օրորելով գլուխը:

— Իսկ ինձ թվում է, որ ես ու դու հենց այդ «ուրիշ տեղով» պետք է գնանք:

Եվ գնացին մի անծանոթ արահետով: Բայց, ի՞նչ արահետ, քիչ անց այն բոլորովին ընդհատվեց: Պատի նման խիտ անտառի դեմ առան:

— Ետ դառնանք,— ասաց Զավենը դժկամությամբ:

— Լավ, որ վախենում ես, դու ետ դարձիր, մենակ կգնամ:

Հակոբի այս խոսքերը որքան վճռական, այնքան էլ ընկերոջը նշավակող էին: Զավենը վերջնականապես տեղի տվեց: Ու գնացին: Ճեղքեցին անտառի խիտ կանաչը, միմյանց փաթաթված ճյուղերը: Հոգնեցին: Հանգստանալուց հետո նորից ճեղքեցին և առջևից գնացող Հակոբը, թե.

— Չէիր գալիս, տե՛ս, ինչ խնձորենիների հանդիպեցինք:

Երկուսով էլ մնացին քար կտրած: Նրանց դիմաց խնձորենու մի ընտիր այգի էր, խառնված անտառին, հենց անտառ դարձած: Համտես արեցին: Վայրի խնձորները դառն են, իսկ սրանք՝ իրենց տնամերձի պտուղների պես:

Հագենալուց հետո շարունակեցին ճեղքել անտառը և շատ զարմացան, որ մի քանի քայլ հետո դարձյալ նույնպիսի խնձորենիների հանդիպեցին, ծանրաբեռնված ընտիր պտուղներով...

Վերադառնալուց հետո, երբ այդ մասին պատմեցին տանը, Հակոբի հայրն ասաց.

— Քաջ Գևորգի այգին կլինի:

— Իսկ ո՞վ է Քաջ Գևորգը: Առաջին անգամ եմ լսում:

Հայրը պատմեց, որ Սելքումանց Գևորգը վաղուց, շատ վաղուց, քաջի անուն է վաստակել մի հեկտարի չափ անտառի վայրի ծառերը կտրելով և նրանց վրա ազնիվ տեսակներ պատվաստելով:

— Բա ինչու՞ հիմա չեք մշակում այդ այգին:

Որդու այս խոսքերի մեջ կշտամբանքի նման մի բան էլ կար, որը հայրը հասկացավ և անմիջապես պատասխանեց.

— Նոր այգիներ ենք գցել, դրանք մոռացել: Համ էլ՝ քոլ է, մեծ, խիտ մեշա. ո՞վ է գլուխ դնողը:

Անցան օրեր...

Վաղ գարնանը, երբ ծառահյութը նոր էր սկսել շարժվել կեղևի տակ, անտառում, այնտեղ, ուր Քաջ Գևորգի այգին էր, լսվեց կացնի ու սղոցի ձայն: Հակոբն ու Զավենն իրենց ընկերներով հատում էին անտառը: Նրանք բոլոր տարեց ու ծեր ծառերը հանում էին արմատից, թողնում միայն երիտասարդները: Այդ նույն ժամանակ Ծաղկաձորի ափին, կոլտնտեսության այգեգործների հետ մի ուրիշ խումբ բնասեր պատանիներ խնձորենու և տանձենու առողջ, նորաբողբոջ կտրոններ էին ժողովում: Հակոբն ու Զավենն էին նրանց այնտեղ ուղարկել:

— Սա ռանետ է, սա էլ՝ կիտայկա, ահա զանազգույն տեսակներ, ընտիր, հոտավետ, հաճելի, պտուղը դիմանում է երկար, մինչև հաջորդ տարվա գարուն:

Այգեգործ Սարգիսն այս խոսքերն ասում էր կտրոն հավաքողներին ու խրախուսում, ոգևորում նրանց:

— Քսանհինգ տարի առաջ էլ,— շարունակում էր նա,— ես եմ իմ ընկերներով կոլտնտեսության այս այգին ստեղծել: Մենք էլ, երբ կտրոնները իրենց բողբոջներով պատվաստակալների վրա էինք դնում, իհարկե, մտովի պատկերացնում էինք նաև այս օրը:

Պատանիները կտրոնների կապոցները շալակեցին և մեկնեցին անտառ, ընկերների մոտ: Այնտեղ բոլոր կտրոնները կտրած մասերով թաղեցին խոնավ հողում:

— Տեսեք, ծառը կտրելիս, ավշահյութը անմիջապես դուրս է գալիս: Դա նշանակում է, որ անմիջապես կկպչի պատվաստած բողբոջը,— ասաց Հակոբը և ցույց տվեց դիմացի խնձորենին, որի կտրված բնից պղպջակներով դուրս էր գալիս ավշահյութը:

Այն ծառերը, որ պետք է պատվաստեին, կտրում էին մեկ մարդահասակ բարձրից, թողնում միայն բունը կամ երկու-երեք ճյուղաբուն:

* * *

Արդեն երեք շաբաթ էր, ինչ պատանիները դպրոցական պարապմունքներից ազատ ժամերին, երեկով անտառ էին գալիս, կտրտում ծառերն ու ապագա այգու տեղը մշակում:

— Չափիր հատած անտառը, պատվաստելու ժամանակը կանցնի, պետք է սկսել,— ասաց Հակոբը Զավենին և, կացինը մի կողմ դնելով, ուղղեց ճակատին իջած մազերի փունջը:



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Հիմա, հիմա,— պատասխանեց Զավենն ու ոտքի թռավ։

Մինչ զրուցում էին մի պահ դադար առած պատանիները, վերադարձավ Զավենը և ուրախ-ուրախ ասաց.

— Ութ հեկտար։

— Բավական է, վաղվանից կսկսենք պատվաստումը,— եղավ Հակոբի խոսքը։

Հաջորդ օրը կիրակի էր, և խումբը շատ վաղ, լուսաբացին արդեն անտառում էր։

— Այսօր այնպես պետք է աշխատենք, որ ավարտենք պատվաստումը, իսկ վաղվանից ոչ մի դպրոցական, բացի ինձանից և Զավենից, այստեղ չպետք է լինի, միայն դասերով պետք է զբաղվեք։

Հակոբի այս խոսքերը լսելով, բոլորը գործի անցան։

* * *

Սպասումների տանջալի օրեր ապրեցին բոլոր պատանիները և ջոկատավար Հակոբը։ Հակառակի պես, հաջորդ օրերից սկսած՝ եղանակները ցրտեցին, ծյունախառն անձրև տեղաց, որը ժամանակավորապես դադարեցրեց պատվաստների անը։

Բայց Հակոբը և Զավենը չնայեցին եղանակին։ Նրանք, եկու օր անց, ձնախառն անձրևին, նամփա ընկան դեպի այգի։ Անցան լյրծուն, ցեխոտ շավիղն ու մտան անտառ։ Ծառերից նրանց վրա էր թափվում անձրևաջուրը՝ խոշոր կաթիլներով։ Խոնավ, գրեթե լիովին թրջված հագուստների մեջ նրանք չէին մրսում, տրոփուն սրտերն սպասում էին ապրում և չէին զգում, որ անձրևաջուրը թափանցում է իրենց մարմինը։

Հասան հատած անտառը։ Բայց զարմացան, երբ այնտեղ տեսան իրենց ընկերներից մի քանիսին, որոնք ծածուկ եկել էին սեփական ծեռքով արված պատվաստների վրա որևէ փոփոխություն նշմարելու ակնկալությամբ։

Սակայն ոչ մի փոփոխություն։ Ոչ մի բողբոջ կենդանության նշան ցույց չէր տալիս։

Ձեռնունայն բռնեցին վերադարձի ուղին։

Երկու օր հետո եղանակները տաքացան։ Հակոբն ու Զավենը շտապեցին անտառ։ Տրոփում էին նրանց սրտերը։

Մոտեցան պատահած առաջին ծառին։ Աչք-բողբոջը գունափոխվել էր, ստացել իսկական բողբոջի գույն։ Բայց դեռևս ան չէր նշմարվում։ Անցան երկրորդ ծառի մոտ։ Նույն պատկերը։ Միայն այստեղ թվում էր, թե բողբոջն ավելի է ուռել, ասես հիմա նայթելու է։ Հակոբը նայում է երկար և հուզված խորհում։

Իսկ երկրորդ շաբաթն անցնելուց հետո արդեն նրանց հուզմունքին սահման չկար։ Պատվաստները կենդանության առաջին նշաններն էին ցույց տալիս։

— Սքանչելի է, ընկերներ,— դիմեց Հակոբը,— բայց դա դեռ չի նշանակում, թե անտառը մենք այգու վերածեցինք։ Ձեզ հայտնի է, որ պատվաստած ծառերը շատ ջուր են պահանջում, իսկ այստեղ ջուր չկա։ Անձրևի վրա չենք կարող հույս դնել, ակնաջուրն էլ երկու կիլոմետր հեռվից է անցնում։ Մնում է, հենց որ դպրոցական պարապմունքներն ու քննությունները ավարտենք, անտառի միջով, դարձյալ մեր ուժերով, ջրանցք կառուցենք, ոռոգենք պատվաստած ծառերը։



## ՄԱՐՈՅԻ ՀՅՈՒՐԸ

ԳՐԻԳՈՐ ՀԱԿՈԲՅԱՆ

— Տուր ինձ ափսե՛ ու դանակ,
Պատառաքաղ, կպրկանդակ,—
Ասաց Մարոն տատիկին,—
Հյուր եմ կանչում ծիտիկին։
Ջմռռանաս նաև տալ
Համով ճաշեր ու գդալ,
Անձեռոցիկ, լավաշ հաց...—
Տատը լսեց ու ժպտաց.
— Ծտին պետք է հատիկ տալ
Եվ ոչ թե ճաշ ու գդալ...

## ԾԻՏԻԿ

ՎՐԵԺ ՎԱՐԴՈՒՆԻ

Բռնել եմ ես մի ծիտիկ,
Փետուրները խատուտիկ,
Տե՛ս, դողում է ձեռքիս մեջ,
Վա՜յ, իմ ծիտիկ, վա՜յ, իմ խեղճ։
Մերթ աչքերն է կկոցում,
Մերթ կտուցն է լայն բացում։
Աղաչում է ինձ ասես,
Որ բաց թողնեմ նրան ես։
Թռ՛ի, իմ ծիտիկ, թռիր վեր,
Միշտ ծլվլա այգում մեր։



Բոլորը հավանություն արտահայտեցին և միաբերան գոչեցին.

— Կարո՞ղ ենք, այդպե՛ս էլ կանենք։

Սակայն ամբողջ ապրիլ ամիսը և մայիսի սկիզբը «արևի կանգնեց»։ Պատվաստները խեղճացան, անը գրեթե դադարեց, մի մասն էլ չորացավ։ Տաշնապի մեջ էին բնասերները։

— Տղաներ, վաղը ազատ օր է, պետք է կազմակերպել առաջին կիրակնօրյակը,—առաջարկեց Հակոբը։

Առաջին կիրակնօրյակը մեծ արդյունք տվեց։ Քլունգներով ու բահերով զինված պատանիները և գյուղի շատ երիտասարդներ մոտ մեկ կիլոմետր երկարությամբ առու փորեցին։

— Դարձյալ մի օր, և մենք կփրկենք պատվաստները,— խոսեց Հակոբը՝ ուրախ ու հուզված։

— Եկող կիրակի էլ կգանք, ոչինչ,— ձայնեցին այս ու այն կողմից։

— Ուշ կլինի, ուշ։

Բայց գիշերը հորդ անձրև եկավ, մանրահատիկ, ներս թափանցող։ Առավոտյան էլ արևը ճառագեց և ոսկե շողերով ողողեց լեռնաշխարհը։

Պատվաստները միանգամից կենդանացել էին։ Անձեր կարելի առանց հուզմունքի նայել իրենց ակնակապիճներից դուրս պրծած սրածայր ու գողտրիկ բողբոջներին, որոնց մեջ ուրվագծվում էին շյուղն ու մանրիկ տերևները։

Այնուամենայնիվ հաջորդ կիրակի նույն համախմբվածությամբ բոլորը դուրս եկան առվի փորմանը, և երեկոյան պատվաստած ծառերի տակ գցված առվակներով խոխոջալով հոսում էր գետակի ջուրը։

* * *

Աճում էին պատվաստները, հասակ քաշում, բարձրանում, շյուղավորվում, ստվերում գետինը։
քիչ պատվաստներ միայն չէին բռնել։ Հաջորդ տարին դրանց փոխարինել էին նոր պատվաստներով։
Ամռան ամիսներին տղաները հերթապահում էին։

# ԵՍ ԱՇՈՒՆ ԵՄ ՆԿԱՐԵԼ

*ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆ*

Թուղթ ու մատիտ եմ առել
եվ աշուն եմ նկարել.
Այգեկութ է, այգեկութ,
Անուշահոտ, քաղցրահյութ:
Վառ խաղողը, ինչպես լույս,
Կախված ողկույզ առ ողկույզ.
Դեղնել է նուրբ փշատը,
Որ հավաքել է տատը.
Սերկևիլն էլ է դեղնել՝
Թավիշ շերտով պարուրվել:
Հապա տանձը կամ թուզը,
Բարակ կեղև ընկույզը,
Քաղցր նուռը, խնձորը...
Հո չեմ թվի բոլորը:
Դե, աշուն է՝ բերքով լի,
Ամեն ինչ էլ կլինի:
Մնաց ավտո նկարեմ՝
Առատ բերքը տուն տանեմ:



Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

թույլ չէին տալիս, որպեսզի վայրի կենդանիները
մուտք գործեն պատվաստած ծառերով տարածու-
թյունը, վնասեն մատղաշ շյուղերը: Շուտով հեռ-
վից դիտողներին արդեն թվում էր, թե այնտեղ
պատվաստած տարածություն չկա, այլ անտառ է
ամբողջությամբ:

Հինգերորդ գարնանը պիոներների պատվաստած
տարածությունը անտառին նմանվեց նաև ծաղիկ-
ներով: Տղաները հրճվանք էին ապրում: Բնությու-
թյունն էլ ասես խինդ էր ապրում իր գրկում կա-
տարված հերոսապատում գործերից: Զգո՞ւմ էր, որ
փոփոխում էին իրեն, երիտասարդացնում, թար-
մացնում:

Եվ եկավ մի օր, երբ Հակոբը մտավ կոլտնտե-
սության վարչության գրասենյակ. Նախագահին
հայտարարեց.

— Պատանիները մի մեծ նվեր ունեն կոլտնտե-
սությանը՝ ութ հեկտար այգի, ընտիր այգի. Այս
տարի առաջին անգամ խնձորի ու տանձի, բերք
տվող այգի:

Լսելով Հակոբի այս խոսքերը՝ նախագահն այլևս
չհարցրեց, թե այդ ինչ այգի է, ինչ նվեր: Նա այդ
մասին վաղուց գիտեր և հաշվային աշխատողնե-
րին ասաց.

— Այգեգործական բրիգադի հաշվեմատյանում
ավելացնել ութ հեկտար, անվանել «Պատանեկան
անտառ-այգի»: Ես երեկ նորից եղա ձեր ստեղծած
այգի-անտառում: Հիանալի է: Ձեր նախաձեռնու-
թյունը մեզ ասում է մի ուրիշ բան. եթե պատանի
բնասերները այդպես քաջաբար նվաճեցին անտա-
ռից ութ հեկտար և ստեղծեցին հոյակապ այգի,
կոլտնտեսականների հզոր ուժը չի՞ կարող, ասենք՝
երեսուն, քառասուն հեկտար նվաճել:

Այսպես, նախկին վայրի, անխնամ, անօգուտ ծա-
ռերի փոխարեն բարձրացավ գեղեցիկ ու սաղար-
թախիտ անտառ-այգին, որն այժմ արդեն քսան
հեկտար տարածություն է գրավում: Այնտեղ առա-
վոտից մինչև ուշ երեկո լսվում են բնասեր պա-
տանիների ուրախ ու հաղթական երգի ձայները:

## ՈՐԲԱՑԱԾ ԾԻՏԻԿՆԵՐԸ

— Ծի՛տ-վի՛տ, ճիտ-վիտի՛կ,—
Բնից թռավ մի ծիտիկ:
Ուրուրը, որ նկատեց,
Ծառից իրեն ցած նետեց,
Բռնեց ծտին ու տարավ,
Նստեց ժայռին ու կերավ:
Զասաց՝ խեղճը բույն ունի,
Բնում երեք ձագ ունի,
Նրանց համար օրնիբուն,
Առավոտից իրիկուն,
Մութ ձորերից ահավոր,
Այգիներից հեռավոր,
Մժեղ, բզեզ ու մոծակ,
Որդ ու թիթեռ անժամանակ,
Էլ ո՞վ պիտի բույն տանի,
Որբ ձագերին պահպանի:

ՕԼՅԱ ԳԱՍՊԱՐՅԱՆ

*(Ազիզբեկովի շրջան, Ազատեկի դպրոցի 4-րդ դաս. աշ.)*

## ՄԵՐ ԹԱՂԸ

Արևը վարսերը փռել
Ու չի էլ հյուսում,
Մեր թաղի ծեռքերն են վառվել
Հյուսել են ուզում:

Մեր թաղը գեղեցիկ է, տե՛ս,
Այտերը նրա,
Արևը խանձել է ասես,
Այս ճամփի վրա:

Ու շիկնել, ճչալ է ուզում
Ամառվա շոգին,
Ջրի տեղ արևն է լիզում
Այս հողե գոտին:

Մեր թաղն է այս ճամփի վրա,
Գեղեցիկ է, տե՛ս,
Արևը այտերը նրա
Խանձել է, այնպե՞ս...

ՍՈՒՐԵՆ ՄԿՐՏՉՅԱՆ

*(Երևան, № 118 դպրոցի աշ.)*

## ՏԵՍԵՔ, ՏԵՍԵՔ

Տեսե՛ք, տեսե՛ք,
Պապիկ, տատիկ,
Հայրիկ, մայրիկ.
Անո քույրիկ,
Ինչե՞ր ասես
Չեմ նկարել.
Երգող ծիտիկ,
Փոքրիկ փիսիկ,
Պոչով մկնիկ,
Զալիկ-մալիկ,
Մի նյուրիկ
Ու թմբլիկ
Սիրուն այծիկ:

ԱՐԹՈՒՐ ԽԱՉԱՏՐՅԱՆ

*(Շամշադինի շրջան, Բերդի դպրոցի 1-ին դասարանի աշ.)*



## ԲԱՐԴԻՆ

Գետի ափին
Սաղափ հագած,
Պարզ շրշում է
Բարդին:

Երեկոյան,
Արշալույսին
Մեղմ խշշում է
Բարդին:

Քամու շնչով
Մեկ ուղղվում,
Մեկ թեքվում է
Բարդին:

Գարնան հողի
Անուշ բույրով
Խենթ արբում է
Բարդին:

Վառ արևի
Շողերի մեջ
Հեզ նազում է
Բարդին:

Գիշեր-ցերեկ
Իմ սրտի հետ
Լուռ խոսում է
Բարդին:

ԱԼԻԽԱՆ ՄՈՒՍՈՅԱՆ

*(Աշտարակ, Կոշի դպրոցի աշակերտ)*

# ԽԻԶԱԽՈՒԹՅԱՆ ԵՐԳԸ

*Կիրակի էր։ Վեցերորդ դասարանի աշակերտ Հայկ Մինասյանը արածեցնում էր կոլտնտեսության ոչխարների մի փոքրիկ հոտ։*

*Աշնանային օրը խաղաղ էր։ Պարզկա երկնքից ժպտում էր արևը և նվազ ջերմությամբ տաքացնում բնությունը։ Հանկարծ երկինքը ծածկվեց ամպերով և մառախուղը լցվեց ձորը։ Բարձրացավ սառը քամի։ Հայկը շտապով հավաքեց ցրիվ եկած հոտը և ուզեց ոչխարներին դուրս բերել ձորից։ Բայց մառախուղն*



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*այնպես թանձրացավ, որ մի քանի քայլի վրա ոչինչ չէր երևում։ Քամու ոռնոցը գնալով ուժեղանում էր։ Շունը, որ քիչ առաջ վազվզում էր հոտի շուրջը, կանգնեց և, դունչը վեր ցցած, սկսեց հաչել։ Հայկի մարմնով սարսուռ անցավ։*

*Առաջ գնալը բոլորովին անհնարին էր։ Ինքը կարող է գնալ, բայց հոտը... Ո՛չ, ո՛չ, նա չի լքի ոչխարներին։ Հետո ի՞նչ պատասխան պետք է տա եղբորը, իսկ ընկերները... կասեն վախկոտ էր, անտեր թողեց հոտը, փախավ։ Իսկ ի՞նչ անել։*

*Մոտերքում կար մի մեծ քարայր. նա որոշեց գիշերել քարայրում։ Երկար փնտրելուց հետո Հայկը գտավ քարայրը, շարշարվելով բացեց մուտքը և ոչխարներին ներս տարավ։*

*Քիչ հետո ամբողջովին մթնեց, քամին սաստկացավ։ Հայկը սարսափեց։ Ապա հիշեց ընկերներին, իրենց դասարանը և, չգիտես ինչու, սկսեց երգել պիոներական մի երգ։ Հետզհետե երկյուղն անցավ։ Քիչ հետո նա երգում էր արդեն ամբողջ ձայնով, կարծես ցանկանալով խլացնել քամու ոռնոցը։*

*Ծանր ու դանդաղ անցավ գիշերը։ Ցրվել էր մառախուղը, լռել էր քամին, բայց չէր լռել Հայկի երգը։ Ձայնը խզվել էր, բայց նա նորից երգում էր ու երգում։*

*Միայն լուսաբացին նա ընդհատեց երգը և դուրս եկավ քարայրից։ Շրջապատի լռության մեջ հանկարծ նրա ականջին հասան խոսակցության ձայներ։ Նա նայեց դեպի ձորը և վաղորդյան աղջամուղջի մեջ նշմարեց մարդկանց մի մեծ խումբ, որ գալիս էր իր կողմը։ Հայկը ճանաչեց առջևից քայլող եղբորը։ Ուրախությունից ոտքերը թուլացան։*

*— Այստե՛ղ եմ, այստե՛ղ,— խզված ձայնով կանչեց նա։*

*Եվ այսպես, վեցերորդ դասարանի աշակերտ Հայկ Մինասյանը կարողացավ փրկել մի ամբողջ հոտ։*

*Պիոներական երգը խիզախության երգ է։*

*ՄԵՐՈՒԺԱՆ ՀԱԿՈԲՅԱՆ*

Վրացական ՍՍՌ, Ախալքալաքի
շրջան, գյուղ Գոման

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## ՎԱՐԴԸ

Ծաղկել ես դու գույնով ալ,
Քնքուշ, նրբին թերթերով.
Ո՞վ կարող է քեզ մոտ գալ
Ու չհարբել քո բույրով։

Տեսքով՝ քնքուշ ու զվարթ,
Այդքան անուշ քո բույրով,
Ասա՛, ինչո՞ւ ես, իմ վարդ,
Պատած սուր-սուր փշերով։

ՆԱԹԵԼԻ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

*(Արտաշատի շրջան, Արևշատի դպրոցի աշակերտուհի)*

# ԵՐԱ՞Զ, ԹԵ՞ ԻՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1965-ի հուլիսի գեղեցիկ օր մը մեր սիրելի Կիլիկյան ճեմարանի տնօրեն Ռուբեն Տիրարյանը ավետեց.

— Հովիկ, պատրաստվիր, մեկ ամսով հայրենիք պիտի մեկնիս: Հայրենիքի մեջ ալ բարձր պահիր Կիլիկյան ճեմարանի և ՀՄՄ-ի (Հայ մարմնամարզական միություն) սաների անունը:

Երա՞զ, թե՞ իրականություն:

Աշխարհի վրա կա՞ զորություն մը, որ կարողանար կասեցնել ընթացքս: Արժիվն անգամ պիտի նախանձեր, եթե տեսներ թռիչքս դեպի տուն՝ հիշյալ ավետիսին հաղորդակից անելու համար նաև ծնողքս:

Երա՞զ... ոչ, իրականություն...

Սովետական «Արմենիա» նավը կսուրա, կճեղքե Միջերկրականի կապույտ ալիքները: Կհասնինք Օդեսա, մեզ կդիմավորեն հայրենիքեն եկած մեր հարազատները: Կուզեմ նետվիլ նրանց գիրկը, համբուրել և համբուրել:

Հայրենիքի ղեկավարությունը ամեն ջանք չէր խնայած, որպեսզի մենք մեզ օտար չըզգանք: Սակայն ինչու՞ օտար զգալ, չէ՞ որ Սովետական Հայաստանը մեր ալ սեփական հայրենիքն է. մի՞թե հանցավոր ենք, երբ անողոք փոթորիկը արմատախիլ ըրած է և օտար ափեր նետած: Այո, մեր ալ սեփական հայրենիքն է, զոր կսիրենք և կպաշտենք:

Հայրենիքի մեջ 30 օրերու ընթացքին մեր տեսածն ու զգացածը սեղմ էջերու մեջ պարփակել անհնարին է: Միայն՝ համարձակորեն կրնամ ի լուր աշխարհի հայտարարել, թե կյանքիս ամենաերջանիկ օրերը եղան Հայաստանում անցկացրած 30 օրերը, որովհետև մենք տեսանք մեր աննման հայրենիքի բանաստեղծներին, գիտնականներին, արվեստագետներին: Մենք տեսանք կապուտակ Սևանը, ալեհեր Արարատը, քառազագաթ Արագածը, պատմական Գեղարդը, Հրազդանը, մանկական երկաթուղին, տուֆակերտ գեղեցիկ Երևանը: Սիրեցի, այո, սիրեցի բոլորը, հիշողությանս մեջ անթառամ պիտի մնան մինչև կյանքիս վերջը:

...Եվ այս երազ չէ, այլ՝ իրականություն:

**ՀՈՎԻԿ ՍԻԼԱՀՅԱՆ**

*Սիրիա, Հալեպ, Կիլիկյան ճեմարանի 7-րդ դասարանի աշակերտ*

ՄԵՐ ՊԱՏԱՆԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՂՆԵՐԸ

## ՀԱՅՐԵՆԻՔԻՍ

Մենք քեզ երբեք չենք մոռանա,
Ձքնաղագեղ Հայաստան,
Պանդուխտ հայերս չենք մոռանա
Քո բաց գիրկը հայրական:

Հրաժեշտ ենք տալիս մենք ձեզ,
Պիոներներ թանկագին,
Բայց սրտերով կարոտակեզ
Ետ պիտի գանք մենք կրկին:

Ցտեսություն, հարազատներ,
Մեր եղբայրներ սիրելի.
Մեր սրտում միշտ վառ կմնան
Ձեր դեմքերը խինդով լի:

ՀՈՒՐԻ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
(ՍԻՐԻԱ, ԴԱՄԱՍԿՈՍ)

ՃԱԿԱՏԱՄԱՐՏ

*ՄՈՒՂԴՈՒՍՅԱՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆ, 14 տ.*



Այս նկարների հեղինակներից շատերին երևի դուք ճանաչում եք Երևանում հաճախ բացվող ցուցահանդեսներից: Նրանք Երևանի ալյումինի գործարանի կուլտուրայի պալատի նկարչական դպրոցի սաներն են, որոնց հարուստ երևակայությանը ու կարողություններին այնպես հոգատար ուղղություն է տալիս նկարիչ Նիկողայոս Քոթանջյանը:



ՄԱՐԴԸ ՏԻԵԶԵՐՔՈՒՄ

*ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆ ՄԻՇԱ, 10 տ.*





ԿԵՆԴԱՆԱԲԱՆԱԿԱՆ ԱՅԳՈՒՄ

ՕՐՋԱՆՅԱՆ ՀԱՐՈՒԹ, 11 տ.



ԳԻՇԵՐ

ՎԱՐԴԱՆՅԱՆ ԿԱՐԵՆ, 13 տ.

ՈՐՍ

ՍԱՐԳՍՅԱՆ ԼԵՎՈՆ, 6 տ.

## ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

# ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ՍՏՎԵՐՆԵՐ



ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

## ԷՇԵՐԻ ԿՈՇԿԱԿԱՐԸ

Հոկտեմբերին, մի կիրակի առավոտ, մենք երեքով կրկին գնացինք Անգլիական այգի, մտանք մեր ծառուղին ու զարմացած կանգ առանք։ Աղբյուրի մոտ ծառից կապված էր մի նիհար ձի, հենց այդտեղ էլ մի սայլ կար, որի վրա հաստ, գորշ կտորից վրանանման բան էր սարքած։ Սայլի մեջ վիճում էին երկու փոքրիկ, զանգրահեր տղա, իսկ ձին ծամում էր չոր խոտն ու ձանձրացած նայում էր վիճողներին։

— Է՜յ, — ձայն տվեց Կարոն, ի՞նչ եք վիճում։

Երեխաները լռեցին։

— Ի՞նչ մարդիկ եք։

Հանկարծ մեծ տղան, որ վեց տարեկանից ավելի չէր լինի, սայլից թռավ ու ձեռքը պարզելով ասաց.

— Մի կոպեկ տուր, ասեմ, թե ինչ կլինի։

Տղան լեզուն հանեց ու փախավ։

Պարզ էր, քաղաքում գնչուներ էին հայտնվել։ Երբ մենք դուրս եկանք այգուց, փողոցներում նրանցից արդեն շատ կային։ Մազերով ու սալաներով բարձված սեաթույր կանայք բռնում էին անցնող քաղաքացիների փեշերից.

— Էժան կտամ, գնացի՝ էլ չես տեսնի, մեկը տար կնոջդ, ալյուր մաղի, գաթա շաղի տղիդ հարսանիքին...

Սկիզբը՝ №, № 8, 9, 10։

Ղանթարում, չորացած ծառի տակ կաշվե գոգնոցով կանգնած էր մի մորուքավոր մարդ և, ձեռքի մուրճն ու տոպրակը թափ տալով, բամբ ձայնով գոռում էր.

— Ինչպես պայտեմ, որ ձիդ սատկի, պայտը մնա, հո՜, հո՜, հո՜...

Աստիճանաբար դրա շուրջը մարդիկ էին հավաքվում։ Հարևան իջևանատնից էշի սանձը քաշելով՝ արդեն մոտենում էր Թուրք այգեպանը.

— Յա՜վաշ, ղարդա՛շ, յավա՜շ...

Գնչուն տոպրակը կախեց չորացած ծառի ճյուղից, պատրաստվելով «կոշիկ հագցնել» այգեպանի էշին...

Չէ, ձի չկար, այդ ձեռնաշեն կոշկակարանոցի առաջ հերթ էին կանգնել միայն բոբիկ էշերը։ Գնչուն չէր վիրավորվում դրանից, ընդհակառակը, արագ-արագ աշխատում էր ու կատակում.

— Էշ կա՝ ձի արժի, մարդ կա՝ մի էշ չարժի։

Մեզ նկատեց, աչքով արեց ու ասաց.

— Է՜յ, լոլող, անունդ, ի՞նչ է։

— Դերենիկ։

— Դերենիկ, ա՛յ Դերենիկ, դու Դերենիկ, ես էլ Բենիկ, մի բան ասեմ, երեք անգամ կկրկնե՞ս։

— Կկրկնեմ, — ծիծաղեցի ես։

— Բայց արագ-արագ։

— Լավ։

— Դե ասա. «Ծտի ճուտը ճմբան ծերին, ծտի ճուտի վիզը ծուռը»։

Ես, իհարկե, «ծ»-երն ու «ճ»-երը խառնեցի։ Բոլորը ծիծաղեցին։ Գնչուն շոյեց ալեխառն մորուքն ու ասաց.

— Բա, Դերենիկ, ա՛յ Դերենիկ, պարծենում ես... — Հետո Թուրք այգեպանի էշի հետ գործը վերջացնելով, մոտեցավ հաջորդ էշին. — Բարձրացրո՛ւ ոտքդ, պարոն, բարձրացրո՛ւ, ասում եմ։

Մենք երկար նայում էինք այդ կատակաբան մարդուն, մինչև նրա տոպրակի բոլոր պայտերը վերջացան ու նա փակեց իր «կոշկակարանոցը», գլուխ տվեց ու ասաց.

— Հարգելի՜ էշեր ու էշատերեր, կոշկակարանոցը բաց կլինի ամեն առավոտ։

Բայց մեր «էշերի կոշկակարին» այդ օրը կրկին հանդիպեցինք։

Երեկոները Անգլիական այգու մուտքը տոմսով էր։ Այնտեղ, կինոթատրոնական ծառուղու մոտ, մի բարձր հարթակի վրա փողային նվագախումբ էր նվագում, բացի այդ, այգում մի փայտե հրապարակային շինություն կար, որտեղ համր կինոնկարներ էին ցույց տալիս։ Օ՜, ի՜նչ հրաշալի կինոնկարներ էին դրանք։ Սրահի մի անկյունում նստում էր «սազանդարը»․ թառ, քամանչա, դհոլ։ Եթե կինոնկարն ուրախ էր, դհոլը հաղթական կռկռացնում էր, եթե կինոնկարը տխուր էր, քամանչան հեծազ էր լալիս, իսկ «սազանդարի» կողքին կանգնած մարդը՝ բացատրում.

— Նայեցեք ուշադիր, ահա տղան մտնում է աղջկանը։ Աղջկա սիրտը կոտրված է։ Աղջիկն արդեն գիտի, որ տղան հեռանում է իրենից։ Ահա նրա սևորակ աչքերից հոսում են տառապանքի արցունքները...

Քամանչան հեծազ էր լալիս, մութ սրահում նստած մարդիկ արցունք էին թափում սպիտակ կտավի վրա արցունք թափող անծանոթ աղջկա համար, մինչև ամենատխուր տեղը հանկարծ կինոժապավենը կտրվում էր ու հանդիսականները միաբերան գոռում էին.

— Փինաչի՜...

— Էլի՜ կտրեց...

Դե պատկերացրեք, թե ինչ հսկայական գայթակղություն էր մեզ համար Անգլիական այգին ու այդ կինոդահլիճը։ Գայթակղությունը գայթակղություն, բայց տոմսակ գնելու համար մենք, իհարկե, փող չունեինք։ Դրա համար էլ մագլցում էինք այգու ցանկապատի վրա, կախվում ծառերի ճյուղերից ու, թե այգու հսկիչը չէր բռնում, մի երեկոյով մերն էր դառնում այդ ամբողջ հեքիաթային աշխարհը։

Այդ օրն ամեն ինչ բարեհաջող գնաց, եթե չհաշվենք, որ ծառից իջնելիս Կարոն քերծել էր ձեռքը։

Կինոնկարը դեռ չէր սկսվել։ Մարդիկ խռնվել էին սրահի դռան առաջ, իսկ տոմսերն ստուգող հաղթանդամ կինը համոզում էր մի զեր մարդու, որը գրպանի հսկայական ժամացույցը ձեռքին, բողոքում էր.

— Կարգ չկա, փող ենք տվել, իննից անց է տասը։

— Ձեր ժամացույցը սխալ է։

— Իմ ժամացույցը սխա՞լ, գիտե՞ք ինչ մարկա է, «ան-կեր», հասկանո՞ւմ եք։

Վերջապես կինը բացեց դուռը։ Մարդն առաջ անցավ, մենք էլ՝ նրա հետևից։

— Սպասիր, սպասիր,— բղավեց կինը,— երեքն էլ ձե՞րն են,— նա ձեռքը թափ տվեց,— կարգի մասին էր խոսում, մի տոմսով՝ չորսը, չեն էլ ամաչում...

Բայց կինը մեզնով զբաղվելու ժամանակ չուներ, հետևից հրում էին, գոռում.

— Բա՛ց թող, ի՜նչ ես ուշացնում...



Վերջապես սրահի լույսերը մարեցին, կինոնկարն սկսվեց։

...Մեկուկես ժամվա հրաշք-հեքիաթը վերջացավ, ամենավերջին վայրկյանին հերոս տղան երկար, բարակ սրով կռվեց իր դիմակավոր թշնամու դեմ, սրի մի ճարպիկ հարվածով տապալեց նրան ու մութ զնդանից ազատեց գերի գեղեցկուհուն։ Իզուր չէր, որ դհոլը կատաղի կռկռացնում էր։

Մենք բոլորի հետ թեթևացած շունչ քաշեցինք և առաջինը դուրս թռանք սրահից։

Ուշ երեկո էր, զինվորական նվագախումբն արդեն հավաքել էր պղնձե գործիքները։ Մենք երեքով շտապ գնում էինք դեպի ելքի դուռը։ Մեր հետևից դեռ լսվում էր սրահից դուրս եկողների ուրախ աղմուկը, իսկ դեպի ելքը տանող ծառուղին դատարկ էր, միայն հեռվում, այնտեղ, որտեղից աղբյուրի ծառուղին էր սկսվում, երևացին երկու ստվեր։ Կիսախավարում ես ճանաչեցի էշե-



Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

րի կոշկակարին, իսկ Ռուբենը հանկարծ սառեց տեղում.

— Հայրիկս...

ԳԼՈՒԽ ՅՈԹԵՐՈՐԴ

## ԱՆՀԱՍԿԱՆԱԼԻ ԶՐՈՒՅՑ

Մայրը չկար։ Չկային նաև մանուկներն ու պառավ, նիհար ձին։ Հավանաբար դրանց քշել էին այգու հսկիչները։ Ժայռի տակ նստել էին երկու մարդ։ Մենք նրանց դեմքերը չէինք տեսնում, բայց երեկոյան խաղաղության մեջ լսում էինք գնչուի բամբ ձայնն ու Վարյուշի խռպոտ շշունջը։

— Գիտե՞ս, որ հայկական թերթերն էլ են տպագրած եղել։

— Հո՛, հո՛, հո՛, տասնհինգ տարի առաջ էր, այն ժամանակից շատ ջրեր են հոսել։

— Ջրեր են հոսել, — հառաչեց Վարյուշը, — խղուր կորավ Մարգոն։

— Նա քեզ էր սիրում, — ասաց գնչուն։

— Հիմար...

— Ո՞ւր է երեխան, — հարցրեց գնչուն։

Վարյուշը երկար ժամանակ լուռ էր, հետո ասաց փոխված ձայնով.

— Չգիտեմ, ես նրան որբանոց էի հանձնել, հետո չգտա։

— Սուտ ես ասում, Վարյուշ, — դժկամ ասաց գնչուն, — կարծեմ քաղաքում դու այդ անունով ես հայտնի։

— Ի՞նչ ես ուզում ասել։

— Սուտ ես ասում, Ցոլակն աշխատում է մեխանիկական արհեստանոցում։

— Դու տեսե՞լ ես նրան։

— Ասել են, — խուսափողական պատասխանեց գնչուն։

— Հիմա ի՞նչ ես ուզում ինձնից, — բարկացավ Վարյուշը։

— Ինձ հետ քաղաքավարի խոսիր, չէ՞ որ մի ժամանակ մենք ընկերներ ենք եղել։

— Այո, — հառաչեց Վարյուշը, — աքսորավայրից փախչելուց հետո ես քեզ հետ հաց եմ կիսել, բայց այն ժամանակ դու դեռ այդքան չէիր սոռբացել։ Եվ ինչպես ընկեր, հիշո՞ւմ ես իրավագիտության ուսանողին, որ ձերբակալվել էր հակապետական թռուցիկներ տարածելու համար։

— Հիշում եմ, — խռպոտ պատասխանեց գնչուն, — հիշում եմ նաև երաժշտական գործիքների արհեստանոցի երիտասարդ վարպետին, որ արհեստանոցն ընդհատակյա հավաքատեղի էր դարձրել։

— Ես պարծենում եմ իմ անցյալով, — կրքոտ պատասխանեց Վարյուշը։

— Հո՛, հո՛, հո՛, — ծիծաղեց գնչուն, — բայց, այնուամենայնիվ անունդ փոխել ես։

— Այդտեղ որևէ հանցանք չկա։

— Ո՞վ գիտի, — թունոտ նկատեց գնչուն, — կան մարդիկ, որ շատ բան են լսել կորպուսի հրամանատար Դումենկոյի մասին։

— Ի՞նչ...

Ապտակի ձայն լսվեց։

Ինչ էր կատարվում ժայռի տակ։ Թփերում թաքնված՝ մենք դողում էինք սարսափից։ Մեզնից տաս քայլ հեռու մարդիկ կռվում էին ու կռվողներից մեկը մեր Ռուբենի հայրն էր։

— Հե՜յ, — ակամա գոռացի ես։

Ժայռի տակ կռիվը դադարեց։ Հետո լսվեց արագ հեռացող քայլերի ձայն ու ծառուղու ծայրից գնչուի սպառնալիքը.

— Դու դեռ պատասխան կտաս։

Ինչպես տուն հասանք, չգիտեմ։ Ռուբենը քիչ էր մնում լաց լիներ։ Տարօրինակ մտքեր էին խռնըվել գլխումս։ Ինչ-որ մեկը ինչ-որ մեկի հետ փախել է աքսորավայրից, ինչ-որ մեկը սպանել է ինչ-որ մեկին, մնացել է երեխան, որին հիմա Ցոլակ են ասում, որը Ռուբենի եղբայրն է ու Վարյուշի տղան։ Բայց Վարյուշը իսկի էլ Վարյուշ չէ և ոչ էլ գնչուն է գնչու։ Գնչուն Վարյուշի մասին գաղտնիքներ գիտի. կա կորպուսի հրամանատար Դումենկո, «Ջի, ձի, ձի» երգի Դումենկոն։ Վարյուշը վախեցավ նրա անունը լսելիս...

(Շարունակելի)

# ՖՈՍՖՈՐԱՅԻՆ ՏՂԱՆ

ՎԱԼԵՐԻ ՄԵԴՎԵԴԵՎ

Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Դպրոցական վերնազգեստ հագած տղան շախմատի զինվորի՝ պեշկայի էր նման: Գլուխը կլոր էր ու խուզած, ուսերը՝ նեղ, հագել էր փեշերը լայն սերթուկ և մեծ՝ ոչ իր ոտքերով կոշիկներ:

— Ծանոթացեք,— ասաց դասղեկը,— սա մեր նոր աշակերտն է: Անունը Տոլյա է, ազգանունը՝ Սորոկին:

— Շարոկին,— ուսուցչուհուն ուղղեց նորեկը:

— Այո, այո, Շարոկին: Տոլյա, դու կնստես ա՛յ այստեղ, երրորդ նստարանին, Կոլյա Դիմիտրևի կողքին,— ասաց նա և դուրս եկավ դասասենյակից:

Դասարանը լուռ զննում էր նորեկին: Նորեկը մի ձեռքով իր դպրոցական աղյուսակն էր բռնել, մյուսով՝ շախմատի տախտակը: Նրա սերթուկի կողքի գրպանից երևում էր պլաստմասսայից պատրաստված ճանապարհորդական շախմատի տուփը:

— Բարև ձեզ,— ասաց Շարոկինը:

— Ողջույն, Պեշկին,— ասաց ուրախ ու հնարամիտ Նիկո-Դիմը (դասարանում Նիկոլայ Դիմիտրևին կրճատ ձևով այդպես էին կոչում):

Բոլորը ծիծաղեցին, իսկ Շարոկինը բոլորովին չվիրավորվեց իրեն տված մականունից: Ի՞նչ կա որ, պեշկան վատ բան չէ, իսկ ութերորդ հորիզոնականում նույնիսկ թագուհի է դառնում: Նա անգամ բոլորի հետ միասին ծիծաղեց:

Ազատ ժամերին Տոլյա Շարոկինը սովորաբար մոտենում էր աղջիկներից կամ տղաներից որևէ մեկին ու ասում.

— Գուցե կխաղայի՞նք:

Խաղալուց ոչ ոք չէր հրաժարվում, որովհետև բոլորն էլ տարված էին շախմատով: Եվ Շարոկինը մեկ առ մեկ հաղթեց ամբողջ հինգերորդ «Բ» դասարանին:

Սկզբում զարմացան, իսկ հետո որոշեցին մի լավ դաս տալ Շարոկին-Պեշկինին և նրա վրա բաց թողնել «դրակոն», որպեսզի նա այնքան էլ չլրպազանա: Հինգերորդ «Բ» դասարանը «դրակոն» էր անվանում խաղի միաժամանակյա սեանսը: Նկատի ունենալով Շարոկինի արտասովոր հաղթանակը, որոշվեց նրա դեմ հանել ամբողջ դասարանը: Ողջ երեսուն բոցավառված շախմատային գլուխներ: Սակայն Շարոկինը չվախեցավ: Նա շփեց իր կլոր գլուխը և դասարանցիներին պարտության մատնեց, տանելով երեսուն պարտիան էլ:

Շարոկին-Պեշկինի ցնցող հաղթանակը Սվետայի միջոցով տարածվեց ողջ դպրոցով մեկ: Բոլոր երեխաներն էլ այդ լուրն ընդունեցին որոշ անվստահությամբ, իսկ հինգերորդ «Ա»-ի շախմատի չեմպիոն Գենկա Փիղը նույնիսկ խայթեց.

— Երևի դուք տանուլ տալու վրա եք խաղացել:

Լսելով այդ խոսքերը, Տոլյա Շարոկինը դասերից հետո մտավ հինգերորդ «Ա», շփեց խուզած գլուխն ու Փղին ասաց.

— Գուցե կխաղայի՞նք:

Փիղը Շարոկինին չարժանացրեց նույնիսկ իր հայացքին, իսկ պատրաստակամ Կոստյա-Մոտյան (Կոստյա-Մոտովիլովը) սարսափեց.

— Դու գիտե՞ս, թե ում ես մարտահրավեր շպրտում: Չէ՞ որ նա մեր չեմպիոնն է:

Իսկ Իգոր Մուրատովը ոտից գլուխ չափեց Շարոկինին և ասաց, ինչպես Սուվորովը՝ Նապոլեոնին.

— Հեռու է գնում, ժամանակն է զսպել այդ կտրիճին:

— Ես կզսպեմ,— նստարանից վեր կենալով ասաց Փիղը,— ես նրա ամենաթույլ տեղին կընհասցնեմ: Ես նրա ուղեղին կխփեմ:

Այս խոսքերով Փիղը ուղղակի հատակին բացեց շախմատի տախտակը և նույնիսկ արեց առաջին քայլը:

— Գիտե՞ս ինչ, Գենկա,— ասաց Պեշկինը,— եթե դու իրոք իմ մարտահրավերը իսկապես ընդունում ես և նույնիսկ խոստանում ես իմ ուղեղին խփել, այդ դեպքում ես իմ ուղեղը պիտի նախապատրաստեմ պայքարի համար:

— Դե, նախապատրաստիր,— մեծահոգաբար ասաց Փիղը:— Հենց պատրաստ կլինես՝ շչացրու:

Ինչպես երևում էր, Շարոկինը չէր ուզում ոչ մի րոպե կորցնել, դրա համար էլ իսկույն ևեթ պայուսակից հանեց Սիմագինի «Հարձակում թագավորի վրա» գիրքը և պատուհանի գոգին բացեց



տախտակը, իսկ Փիղը երեխաների ուղեկցությամբ գնաց դպրոցի բուֆետն ու գնեց երեք բուտերբրոդ սալմոն ձկով։

Նախաճաշի ընթացքում շախմատային կրքերը հանդարտվեցին, և մտազբաղ Նատաշա Զվոնկովան ասաց.

— Եվ ընդհանրապես էդ Շարոկինը, իմ կարծիքով, շատ լուրջ հակառակորդ է։

Իսկ Նիկոլայուկին Կոլյան ուղղակի հարցրեց.

— Փի՛ղ, ինչու՞ դու ոչնչով չես զբաղվում։

— Ո՞նց թե՝ ոչնչով,— վիրավորվեց Փիղը։— Ես իմ ուղեղը լցնում եմ ֆոսֆորով։

— Իսկ ինչու՞ ուղեղդ չես պատրաստում մարտի համար,— ասաց մտածկոտ Նատաշան։

— Որովհետև ուղեղի համար ամենագլխավորը ֆոսֆորն է։

— Իսկ դա քեզ ո՞վ է ասել։

Փիղը գրպանից հանեց օրացույցի պոկված թերթիկը։

— Ահա. «Ֆոսֆորը կյանքի և մտքի էլեմենտն է»,— բարձրաձայն կարդաց նա վերնագիրը։— Մտքի էլեմենտ։ Ըմբռնեցի՞ք։

Քիմիան Շուրա Գուսևի սիրած առարկան էր, դրա համար էլ բոլորը հարցական նայեցին նրան։ Շուրան մտածեց ու ասաց.

— Ընդհանրապես ֆոսֆորը ուժ է։ Դա ճիշտ է։

— Ուրեմն ինչքան շատ խժռես, այնքան շա՞տ ես պատրաստվում,— կասկածանքի մեջ ընկավ մտածկոտ Նատաշան։

— Ճիշտ այդպես։ Մենակ թե դուք Պեշկինին էդ մասին ոչ մի խոսք չասեք,— փսփսաց Փիղը։ — Դա գաղտնիք է։

— Ի՞նչ ես ասում, Գենկա,— ասաց սրտաբաց Նիկոլյուկինը։— Չէ՞ որ մեր գլխում էլ ֆոսֆոր կա...

— Ֆոսֆորը տարբեր է լինում,— ասաց Փիղը։— Առաջին տեսակի,— նա շփեց իր գլուխը,— և երկրորդ տեսակի,— նա շփեց Նիկոլյուկինի գլուխը։

Հենց այդ ժամանակ բուֆետ մտավ Պեշկինը։ Նա մոտեցավ ցուցափեղկին և սկսեց մտածել, թե ինչ գնի նախաճաշի համար։

Հինգերորդ «Ա»-ն քարացավ։ Փիղը նույնիսկ դադարեց ծամել։ Մի՞թե այդ Պեշկինն էլ էր օրացույցում կարդացել ֆոսֆորի մասին, իսկ գուցե և լրտեսե՞լ է։ Հետաքրքիր է, թե նա ինչ կընտրի։

Վերցնելով մի բաժակ կիսել ու մի բլիթ, Պեշկինը նստեց փոքրիկ սեղանի մոտ և քիթը խրեց գրքի մեջ։ Հինգերորդ «Ա» դասարանի սիրտը տեղն ընկավ. ինչպես հայտնի է, կիսելի մեջ ֆոսֆոր չկա, իսկ Փիղը սկսեց դարձյալ եռանդով խժռել, այսինքն՝ այնպես պատրաստվել տեղի ունեցող մրցմանը, որ նրա ականջների հետևը սկսեց ճռճռալ։ Փիղը ամբողջ երկրորդ և երրորդ



դասամիջոցներին ծամում էր, իսկ չորրորդի ժամանակ, չգիտես ինչու, դադարեց ծամելուց։ Նա ուղղակի նստել էր նստարանին և շուռ էր տալիս գրպանները։

— Փողս վերջացավ,— ձեռքերը տարածելով ասաց Փիղը։

Այդպես կարելի է տանուլ տալ, մտածեց հինգերորդ «Ա»-ն և սկսեց տեղորեն փող հավաքել։ Ապա վազեցին բուֆետ և գնեցին վերջին յոթ սեմգայով բուտերբրոդները, իսկ դեռ մի հատն էլ խնդրեցին Կոլկա-ֆուտբոլիստից (միևնույն է, նրան ֆոսֆոր պետք չի)։

Հաջորդ օրվա առավոտյան դասարանում Գենկային մի անակնկալ էր սպասում։ Խիստ գաղտնի կոչի համաձայն՝ «Ամբողջ ուժերը հանուն Փղի ֆոսֆորացմանը», դասընկերները պայուսակներն էին խոթել ամեն ինչ։ Էլ ձկից պատրաստած կարկանդակներ, էլ բուտերբրոդ, նույնիսկ, մի քանի տուփ պահածո։ Գենկա Փիղը այդ բոլորը դարսեց սեղանին, միաժամանակ հայտարարելով, թե ամենից շատ ֆոսֆոր կա սև և կարմիր խավյարների մեջ...

— Լսիր, Փիղ, իմ հաշվումներով դու քո գանգում այնքան ֆոսֆոր ես կուտակել, որ հանգիստ կերպով կարող ես հինգերորդ դասարանցիների աշխարհի չեմպիոն դառնալ։

— Իսկ եթե ես զգում եմ, որ իմ գլխում դեռ մի քիչ պակասում է... էն ժամանակ ի՞նչ,— ասաց Փիղը և բացիչով սկսեց բանալ պահածոն։— Չէ՞ որ դուք ինքներդ էիք ասում, որ Պեշկինը շատ լուրջ հակառակորդ է։

Հինգերորդ «Ա»-ն դուրս գնաց դռան հետևում խորհրդակցելու։

— Բայց գուցե նա իրո՞ք դեռ չի փոփոխվել։ —

— Իսկ ես գիտեմ, թե ոնց պիտի ստուգել։ Նրան կտանենք մի մութ տեղ, — շշնջաց Գուսկը, — եթե նա արդեն փոփոխվել է, ապա պիտի լու-սա-վոր-վի։

— Ճիշտ է, — ասաց հինգերորդ «Ա»-ն, Փղին «մթնեցնենք»։

Փղի «մթնեցումը» կատարվեց ֆիզիկայի սենյակում, որտեղ դրված էր կախարդական լամպ՝ դիապոզիտիվի ցուցադրման համար։ Փակ դռան հետևում, հանգցրած լամպի տակ, Գուսկի ղեկավարությամբ հատուկ հանձնաժողովը կատարեց Գենկա Փղի մանրակրկիտ զննումը։

Դժբախտաբար, որքան էլ հանձնաժողովը չռված աչքերով նայեց Գենկա Փղին, նա լույս չտվեց։

— Լավ, — ասաց Գուսկը Փղին, — դասերից հետո փող կհավաքենք և քեզ կտանենք ձկնեղենի սրճարան։

— Ինչու՞ ձկնեղենի, — հարցրեց Փիղը՝ պղտորված աչքերով նայելով Գուսկին, — ֆոսֆոր կա և խմորեղեններում, և՛ շոկոլադի, և՛ կակաոյի մեջ։

— Թող այդպես լինի, — ասաց Գուսկը, — կակաո կստանաս։ — Եվ բարձրանալով նստարանի վրա, կոչ արեց.

— Երեխանե՛ր, բոլոր փողերը՝ հանու՛ն թշնամու ջախջախմանը։

Հենց այդ պահին էլ պարզվեց, որ թշնամուն ջախջախելու համար հինգերորդ «Ա»-ն փող չուներ։ Ամբողջ փողերն արդեն ծախսվել էին։ Այդ ժամանակ գնացին հինգերորդ «Բ»-ից պարտք խնդրելու։ Եվ նրանք հեշտ ու հանգիստ փող տվեցին, առանց իմանալու, թե ինչի համար են տալիս։ Եվ Փղի ֆոսֆորացումն արդեն մոտենում էր իր ավարտին։

Մոսսովետի հրապարակի «Հանգիստ» սրճարանում մատուցողը Գենկա Փղի, Յուրա Գուսկի և նրա «ֆոսֆորային հանձնաժողովի» անդամների համար բերեց մի ափսե խմորեղեն, շոկոլադ և կակաո։ Իսկ երեկոյան Գենկա Փիղը նստել էր Տանյա Վերիովկայի կողքին և նրա բարեկամների հետ տոնում էր նրա տատիկի տարեդարձը։

Այդ ժամանակ «ֆոսֆորային հանձնաժողովը» լրիվ մթության մեջ կանգնել էր սանդղահարթակին և համբերատարությամբ սպասում էր, թե երբ պիտի Գենկա Փիղը, Ջուրկինի խոսքերով ասած, վերջացնի իր «տորթամշակությամբ զբաղվելը»։ Վերջապես հայտնվեց Գենկա Փիղը և իր բարձրաձայն զկրտոցով լցրեց սանդղահարթակը։ Ի պատասխան դրան, հանձնաժողովը ուրախ և հանգստացած շունչ քաշեց։ Խորը մթության մեջ Փղի կլոր ու կուշտ կերած դեմքը մեղմ ֆոսֆորային լույս էր արձակում։ Նսես ժամացույցի թվատախտակ լիներ։ Նրա գլխի վերևում փայլում էր կապույտ լույսը։

— Վաղը մաչն է, — դատավճիռ կայացրեց հանձնաժողովը։

— Իսկ ինչու՞ վաղը, — հարցրեց Փիղը։ — Ֆոսֆոր հո միայն տորթերի մեջ չկա...



— Ջխկում քեզ, — ասաց Գուսկը։

— Իսկ զխկումի մեջ ֆոսֆոր կա՞, — հարցրեց Փիղը։

— Սրա մեջ չկա, — պատասխանեց Գուսկը՝ Փղի պլպլացող քթին դեմ անելով հինգ մատից կազմված կոմբինացիան։ — Վաղը խելոք բալայի պես կխաղաս։

— «Փոքրիկ շախմատային դաշտում մեծ արվեստ է ապրում...» — Փղին ուղեկցելով անհեղ մարտի՝ երգում էին հինգերորդ «Ա»-ի աղջիկները։

Հինգերորդ «Բ» դասարանի դուռը հրելով՝ Փիղը մտավ դասասենյակ և մի կարճ, բայց էֆեկտավոր լռությունից հետո շլացրեց։ Դա տեղարվեստական սուլոց էր, որի մեջ մարտի ծարավը և հաղթանակի վստահությունը միաձուլված էին դեպի թշնամին ունեցած արհամարհանքի հետ։

Դրանից հետո Փիղը մարտական աղմուկով գլխավերևում շխկշխկացրեց շախմատային տախտակը, դասավորեց ֆիգուրները, և մարտը սկսվեց։

Տասնհինգերորդ քայլից հետո Փիղը տարվեց։

Հինգերորդ «Ա» դասարանի ճնշող լռության և հինգերորդ «Բ» դասարանի ուրախության ճիչերի տակ Փիղն իր գլխում երկար-բարակ ինչ-որ բան էր վերլուծում, հետո քթով փնչացրեց ու արտաբերեց միմիայն մի հատիկ հանելուկային բառ.

— Պատե՛րը։

— Ի՞նչ գործ ունեն այստեղ պատերը:

— Այն գործն ունեն, որ մենք խաղացինք հինգերորդ «Բ»-ում,— բացատրեց Փիղը:— Իսկ հինգերորդ «Բ»-ն Շարոկինի համար իր հարազատ

Երկրորդ պարտիան Փիղն իրենց դասասենյակում տարվեց տասնչորսերորդ քայլում... Այս անգամ Տոլյա Շարոկինին նետվեցին գրկելու և թշնամիները, և ընկերները: Հետո նրան մի քանի



տունն է, իսկ տանը, ինչպես հայտնի է, պատերը օգնում են:

— Դու պատերի մասին մի՛ խոսիր, այլ ասա, թե ինչ ես առաջարկում:

— Առաջարկում եմ հաջորդ խաղը խաղալ մեր դասարանում:

— Իսկ մեր դասարանում կհաղթե՞ս:

— Իհարկե կհաղթեմ: Եթե փոսփորին ավելացնենք պատերը, ոչ մի Պեշկին չի դիմանա:

Երկու դասարանների աշակերտների գոռումգոչյունի տակ շախմատի տախտակը տեղափոխեցին հինգերորդ «Ա» դասարանը:

անգամ վեր-վեր թռցրին մինչև առաստաղը և ձեռքերի վրա դասարանից դուրս տարան: Եվ միայն «քիմիկոս» Գուսևն էր, որ չէր կարողանում ոչ մի կերպ հանգստանալ: Ապուշային հայացքով նայելով ֆիգուրներին, Գենկա Փիղը շարունակում էր նստած մնալ շախմատային տախտակի մոտ, ձեռքերով գրկելով իր փոսփորացած գլուխը:

— Այո՛,— ասաց քիմիկոս Գուսևը:— Ինչպես երևում է, բացի փոսփորից, հարկավոր է գլխում մի ուրիշ բան էլ ունենալ...

Թարգմանեց ԼԻԶԱ ՊՇԽՈՅԱՆԸ

# ՀԵՌԱԴԻՏԱԿԸ

ՍԱՂԱԹԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Էհե՜յ... քաջ հեծյալներ... պատրաստ եղեք... թշնամին արդեն հորիզոնի վրա է... Համհա՛րվ, շո՛ւտ հասցրու նժույգս, գնում ենք հարձակման...

Չնայած խոսքերը շատ էին մարտական և ավելի խրոխտ ու առույգ ձայն էին պահանջում, բայց Գագիկը դրանք մի տեսակ նույնիսկ անտարբեր էր արտասանում: Նա նստած էր թթենու ամենաբարձր ճյուղին և ոտից-գլուխ սպառազինված էր: Բացի ատրճանակից, որ նա խրել էր շալվարի գոտու մեջ, պարսատիկից ու նետ-աղեղից, նա ձեռքին հեռադիտակ էլ ուներ:

Պակաս ոչինչ չկար, որպեսզի տասնմեկ տարեկան մի տղա իրեն երջանիկ զգա, բայց Գագիկը նույնիսկ տխուր էր: Պատճառն, իհարկե, այն չէր, որ ատրճանակն ընդամենը մի կեռ փայտի կտոր էր ու նետ-աղեղն էլ ինքն էր սարքել, իսկ հեռադիտակը... դե, հեռադիտակն էլ իր ձեռքի աշխատանքն էր, բայց դա ի՞նչ



նշանակություն ուներ, երբ իսկական հեռադիտակից բոլորովին չէր տարբերվում: Նա երկու վարունգ էր ծակել, կարճ փայտիկներով կուզահեռ միացրել իրար, անցքերին կլոր ապակիներ հարմարեցրել, ու ստացվել էր իսկական հեռադիտակ: Երբ Գագիկը «հեռադիտակը» դնում էր աչքերին, բոլոր հեռավոր առարկաները մոտենում էին: Ի՞նչ անենք, որ ձեռքով էր շինված՝ հո՞ ցույց էր տալիս:

Նրա տխրության պատճառը մենակությունն էր: Արդեն երկու ժամ է, ինչ նստած էր թթենու ամենաբարձր ճյուղին և տերևներով էլ քողարկվել էր, որպեսզի իր ռազմական կոչերով վարժացնի տղաներին, բայց ո՛չ ոք չէր երևում: Նա այդպես էլ չէր կարողանում ցույց տալ իր ռազմական ունակություններն ու հեռադիտակի կորությունը:

Շոգն էլ մյուս կողմից էր վրա տվել: Եթե նա նըստած լիներ թթենու ներքևի ճյուղերին, այդքան չէր շոգի, բայց ներքևում հետաքրքիր չէր լինի, նույնիսկ հարևանի փոքրիկ տղան՝ Արշակը, նրան իսկույն կհայտնաբերեր:

Գագիկը գիտեր, որ աշխատանքի ամենաեռուն շըրջանն է և գյուղում շատ քիչ մարդ է մնացել: Երեխաներն էլ էին ծնողների հետ դաշտ գնում, ու տանը մնացածներն էլ զբաղված էին տնային գործերով, բայց բոլորովին չէր կասկածում, որ իր ձայնը լսելուն պես վազելով կգան Հովակն ու Զավենը, Սարիկն ու Նահապետը, իսկ Արշակի ու նրա նման մանրապճեղների մասին խոսք լինել չէր կարող: Նրանք ամենահիմնական հանդիսատեսներն էին լինելու: Բայց ոչ ոք չերեվաց, նույնիսկ Արշակը, որն այդ ժամերին միշտ գալիս էր ու խնդրում, որ Գագիկը հետը խաղա: Ճիշտ է, Գագիկը միշտ մերժում էր նրան ու բակից քշում: Դե, նա Արշակից երկու տարով մեծ էր ու, պարզ է, չէր ուզենա խաղալ մեկի հետ, որը երկրորդ դասարան հազիվ է փոխադրվել ու դեռ փայտե ձի է նստում: Ինչ վերաբերում է իրեն, Գագիկին, ապա նա վաղուց փայտե ձի չի նստում և նույնիսկ երկու անգամ արդեն իսկական ձի է նստել:

Բայց այսօր ուրիշ է: Հիմա Գագիկը դեմ չէր լինի, որ գոնե Արշակը երևար: Ախր վաղուց էր նա նստած, նույնիսկ ոտքերը թմրել էին, բայց ոչ ոք չէր գալիս:

Մի անգամ հեռվից անցավ Ալեքսան բիձան և Գագիկը հեռադիտակն աչքերին դնելով, սկսեց գոռգոռալ.

— Տեսնո՜ւմ եմ... թշնամական հետախույզ եմ տեսնում... Ծպտված լրտե՜ս եմ տեսնում:

Ալեքսան բիձան ոչ մի ուշադրություն էլ չդարձրեց Գագիկի վրա, նույնիսկ շուռ էլ չեկավ և բահը ուսին դրած՝ քայլեց առվի երկայնքով:

— Տեսնո՜ւմ եմ... թշնամական մի հետախույզ եմ տեսնում... ահա՜, ծպտվել ես, հա՞... գլխիդ թաշկինակ ես կապել, հա՞... կեղծ մորո՞ւք ես կպցրել... ինձ չե՞ս խաբի...

Նա հույս ուներ, որ եթե Ալեքսան բիձայի արտաքին նշաններն ասի, վերջինս կանգ կառնի և գոնե մի անգամ շուրջը կնայի, բայց իզուր... Ալեքսան բիձան անցավ ցանկապատի մոտով և կորավ ուռենիների ըստվերում:

Հետո էլի մի ժամ անցավ, և ոչ ոք չերևաց: Շուրջը կատարյալ լռություն էր տիրում: Նույնիսկ գորտերը լռել էին, երևի շոգից էր: Թթենու կատարից նա տեսնում էր հեռվում՝ բամբակի դաշտում աշխատող կոլխոզնիկներին: Նա գիտեր, որ շոգ արևի տակ աշխատելը դժվար է, բայց սկսեց նախանձել նրանց: Աշխատում էին մեծ խմբով: Ճիշտ է, նրանք շատ էին հեռու և նույնիսկ հեռադիտակով պարզ չէին երևում, բայց նա գիտեր, որ երեխաներ էլ կան այնտեղ: Հետո հիշեց, որ առավոտյան մայրն ու քույրիկը դաշտ գնալիս հույս հայտնեցին, որ մինչև երեկո Գագիկը տնամերձում գոնե մի մարգ սոխ քաղհանած կլինի: Հիշեց, բայց չիջավ: Գուցե տղաներից մեկն ու մեկը հայտըներ: Եվ նրա հույսերն արդարացան: Հարևան այգու ծայրին երևաց Արշակի կարմիր վերնաշապիկը:

— Էհե՜յ, հեծյալներ, պատրաստ եղեք... հյուսիսից երևում են սպիտակները... Սպասեցե՛ք, մենք ձեր ճաշը կեփենք... հա՛, հա՛, հա՛... գալիս են և չգիտեն, որ այստեղ նրանց համար թակարդ է պատրաստված...

Արշակը քայլերն արագացրեց և, մոտենալով ցածրիկ պարսպին, վիզը երկարացնելով, նայեց Գագիկենց բակի կողմը՝ առանց կտրվելու յավաշի իր հսկայական բրդուճից:

Գագիկը տեսավ, որ Արշակն արդեն փնտրում է իրեն և ավելի ոգևորվեց.

— Կրա՜կ... կրա՛կ բաց արեք... հետևա՜կ, լսի՛ր իմ հրամանը... չմոռանաք, որ թշնամին լրտեսներ է ուղարկում... ուշադի՛ր եղեք... ես մի լրտես արդեն հայտնաբերել եմ... կրա՜կ...

Նա աղեղը լարեց և նշան բռնելով Արշակին, նետը բաց թողեց: Արշակն ամենևին էլ չվախեցավ դրանից և նույնիսկ նետի շնորհիվ նա հայտնաբերեց Գագիկին:

— Տեսա՜, տեսա՜... թթի ծառի վրա ես...

Գագիկը միաժամանակ սսկվեց: Նա կարծում էր, թե չափից լավ է քողարկված և Արշակը ենթադրելով է ասում,, բայց Արշակը փնչացնելով անցավ ցածրիկ պարիսպն ու հայտնվեց թթենու տակ:

— Տեսնո՞ւմ եմ...— ծիծաղելով ասաց Արշակը՝ ներքևից նայելով Գագիկին:

— Հետո՞ ինչ... կարո՞ղ ես բարձրանալ...

— Չեմ կարող,— պարզամտորեն խոստովանեց Արշակը:

— Էլ ի՞նչ ես ձենդ գլուխդ գցել... տե՞ս...

— Էդ ի՞նչ է, խիյա՞ր...

— «Խիյա՞ր»... դու հավիվ խիյար տեսնես... սա հեռադիտակ է... ա յ, ես դնում եմ աչքիս ու ամեն ինչ մոտ եմ տեսնում:

Հեռադիտակը Արշակին հետաքրքրեց:

— Կտա՞ս նայեմ:

— Ինչո՞ւ չեմ տա... բա քեզ ես բա՞ն կխնայեմ...

Արշակը երախտագիտությամբ լցվեց դեպի Գագիկը և նույնիսկ մի փոքր հուզվեց: Եթե Գագիկի փոխարեն մեկ ուրիշը լիներ, Արշակը չէր զարմանա, բայց ախր Գագի՞կը... նա, որ մի ծղոտ անգամ մարդու չէր տա և դեռ եղածն էլ ձեռքիցդ կառներ, հիմա այդքան սիրալիր է դարձել: Չէ՛, իկուր են նրանից թաղի տղաները երես դարձրել, Գագիկն այնքան էլ վատը չի:

— Դե իջի՛,— սրտապնդված ասաց Արշակը:

— Է՜, էդ չեղավ... համ հեռադիտակս տամ, համ էլ ցած իջնեմ: Քեզ համար է, դու էլ բարձրացիր ինձ մոտ:

— Ախր ես չեմ կարող...



— Դու գիտես... Որ չես կարող՝ ես ի՞նչ անեմ:

Արշակը գիտեր, որ բարձրանալ չի կարող, բայց էլի ձեռքի բրդուճը կանաչի վրա դնելով, փորձեց մագլցել ծառը: Սկզբում դա նրան հաջողվեց և փսփսալով ու փնչալով հասավ առաջին հաստ ճյուղին: Հետո վեր նայելով տեսավ, որ առանց ոստերի հաստ բունը ինքը, միևնույն է, չի կարող հաղթահարել, մնաց առաջին ճյուղի վրա նստած:

Գագիկն էլ գիտեր, որ Արշակը ավելի բարձր չի կարող ելնել, դրա համար էլ հեռադիտակն աչքերին դնելով, սկսեց նայել հեռուն այնպես, կարծես Արշակի գոյությունը չի էլ զգում:

— Գագո՜, ա՛յ Գագո՜...— խեղճացած խոսեց Արշակը:

— Տեսնո՞ւմ եմ, ի՞նչ եմ տեսնում, թշնամու կորքերն եմ տեսնում... Հեծելակո՞ր, պատրա՞ստ...

Մինչ Գագիկը ոգևորված խոսում էր, Արշակը սահելով իջավ ցած, լավաշի բրդուճը վերցրեց և ուտելով գնաց դեպի պարիսպը: Գագիկը չէր սպասում այդ:

— Ո՞ւր, Արշակ...

— Գնամ բիբարը քաղհանեմ... մայրիկն է ասել:

— Ի՞նչ անենք... Իմ մայրիկն էլ ասել է, որ սոխը քաղհանեմ... մնա՛, չե՞ս տեսնում, խաղում ենք:

— Էդ դու ես խաղում... ես չեմ խաղում...

— Ո՞նց թե... Դու էլ ես խաղում... Էդպես էլ է լինում՝ մեկը ծառի վրա, մյուսը տակը:

— Չէ՛, թող երկուսն էլ տակը լինեն:

Գագիկը բավական ժամանակ լուռ էր, հետո ասաց.

— Լա՛վ, սպասիր, իջնեմ... Մենակ թե հեռու գնա, կենքերս ցած եմ գցում...

Գագիկը նախ նետ-աղեղը ցած գցեց:

— Սա իմ նետ-աղեղը, ձեռք չտա՞ս...

— Լավ... եղածն էլ մի բան լինի, բարդու ճյուղ է, է՛լի:

— Ինչ որ է, ձեռք չտաս: Սա էլ՝ պարսատիկը, սա՝ ատրճանակը...

— Բա հեռադիտա՞կը:

— Հեռադիտակը չի լինի գցել, հետո կիջեցնեմ:

Չանցած մի րոպե, Գագիկն արդեն ներքևում էր:

— Տեսա՞ր, ինչքան շուտ եկա...

— Դե տո՛ւր հեռադիտակը...

— Մենակ թե իմ ձեռքով կնայես:

Եվ Գագիկը վարունգ-հեռադիտակը մոտեցրեց Արշակի աչքերին:

— Մոտեցնում է, չէ՞...

— Ի՞նչը:

— «Ի՞նչը», «ի՞նչը»... ամեն ինչը:

— Ճիշտ է:

— Բա՞, լխպորի մեկը... բա ի՞նչ կարծեցիր...

— Լավ, խիյարներդ քեզ մնան, ես գնացի,—ասաց Արշակն ու գնաց դեպի պարիսպը:

— Սպասի՛ ,— իրար խառնվեց Գագիկը:— Ի՞նչ եղավ, նեղացա՞ր, Արշակ... Սպասի՛, կխաղանք,— հե-



# Սկսնակ շախմատիստի ԴՊՐՈՑ

դասավանդում է աշխարհի չեմպիոն ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

## ՇԱԽՄԱՏԱՅԻՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՍԿԶԲՆԱԽԱՂԵՐԻ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ

1. e4 e5 2. Ձf3 Ձc6 3. Փc4 Ձf6 4. Ձg5 d5 5. ed Ձ: d5 6. Ձ:f7 Ա:f7 7. Թf3 + Աe6 8. Ձc3 Ձce7...

Այս բոլորը կարող է մեծ հետաքրքրություն ներկայացնել անփորձ շախմատիստի համար՝ անժամանակ հարձակում f7 կետի վրա, որից, ի դեպ ասած, սկսնակները սովորաբար պաշտպանվում են 3...h6 միջոցով, քայլ, որը բնավ լավագույնը չէ. 5...d5, թվում է, թե հուսալիորեն պաշտպանվելով Ձ:f7 սպառնալիքից, սպիտակ ձիու զոհաբերություն f7 վրա... Այս բոլորը հետաքրքիր է, և նույնիսկ փորձառու շախմատիստներից ժամանակ կպահանջեր մտածելու համար: Սակայն ուժեղ շախմատիստները նման դիրքերի հանդիպում են հազիվ թե միայն միաժամանակյա խաղի սեանսներում, երբ նրանց վիճակվում է խաղալ մի քանի տասնյակ շախմատիստների հետ: Այս քայլերը վարպետները կատարում են կայծակնորեն, որովհետև բոլորը նրանց լավ հայտնի է կամ, ինչպես ասում են, նրանք գիտեն այդ տարբերակի տեսությունը: Նման տարբերակներ ամեն մի ուժեղ շախմատիստի հայտնի են շատ և շատ: Սակայն արդյո՞ք նշանակում է, որ շախմատիստը այն հիշում է անգիր: Անկասկած, որոշ նվազագույնը պետք է լավ հիշել, սակայն շախմատային տեսության ուսումնասիրության ճիշտ մոտեցման հիմքն է շախմատի ստրատեգիան, գիտակցելով, որ շախմատում ամեն ինչ հենվում է այդ սկզբունքների վրա: Տրամաբանորեն կշռադատելով և հիշելով այդ հիմունքները, ուժեղ շախմատիստը ճիշտ կկողմնորոշվի ամենաբարդ, ամենաանսպասելի, նույնիսկ մինչ այդ չուսումնասիրված տարբերակներում:

Եկեք վերադառնանք վերոհիշյալ քայլերին: 1.e4 e5 2Ձf3 Ձc6 3Փc4: Առայժմ ամեն ինչ տրամաբանական է: Օգտվելով առաջին քայլի իրավունքից՝ սպիտակները հանդես են բերում նախաձեռնություն: Նրանք փոքր ինչ լավ են զարգացած և վերջին քայլով „նշան են բռնել" f7 կետի վրա: 3...Ձf6 այդ քայլն էլ տրամաբանական է: Սևերը ոչ միայն ֆիգուր զարգացրին, այլև թափով հարձակվեցին «e4» զինվորի վրա: 4. Ձg5: Օգտվելով հնարավորությունից, սպիտակները գրոհում են 4...d5, փակելով դեպի «f7» զինվորը տանող ճանապարհը: 5. ed: Այդ դիրքին մենք դեռ կվերադառնանք, իսկ այժմ տեսեք, թե ինչ է տեղի ունենում խաղատախտակի վրա: 5. Ձ: d5 6. Ձ: f7!




6... Ա: f7 7. Թf3+: Առանց այդ քայլի, ձիու զոհաբերությունը իմաստ չէր ունենա: 7... Աe6: Արդեն նկատելի են սպիտակների գրոհի առաջին արդյունքնե-

---

տո տեսնելով, որ Արշակը գնում է առանց կանգ առնելու, ավելացրեց.— Ուզո՞ւմ ես տամ քո ձեռքով նայի:

— Չեմ ուզում... Որ ուզենամ, ես էլ կսարքեմ...

— Դե լավ, Արշակ, մի՛ գնա,— գրեթե աղաչական ասաց Գագիկը:

— Որ չգնամ՝ ի՞նչ կանենք...

— Չգիտեմ, կխաղանք:

— Արի քաղհան-քաղհան խաղանք:

— Արի խաղանք,— համաձայնեց Գագիկը:

— Առաջ մեր բիբարը քաղհանենք, հետո՝ ձեր սոխը, լա՞վ...

— Առաջ՝ մեր սոխը:

— Չէ՛...— և Արշակը անվրդով գնաց դեպի պաբիսպը:

— Լա՛վ... բայց հետո մեր սոխն էլ քաղհանենք,— Արշակի հետևից գնալով՝ ասաց Գագիկը:

— Լավ...

Կեսօրին, երբ Ալեքսան բիձան բահը ուսին վերադառնում էր, տեսավ, որ բիբարի մարգի մոտ այս ու այն կողմ են ընկած Գագիկի ատրճանակը, պարսատիկը, նետ-աղեղն ու վարունգ-հեռադիտակը, իսկ Գագիկն ու Արշակը եռանդով քաղհանում են բիբարի մարգերը:

— Ա՜յ, ապրեն իմ պստիկ աշխատավորները,— ասաց նա բեղի տակ ժպտալով:

րը՝ սև արքան ստիպված եղավ «ճանապարհորդել» դեպի խաղատախտակի կենտրոն: Այլ պատասխանների դեպքում սևերը կմնային առանց զինվորի, փոխարենը չստանալով ոչ դիրքային, ոչ էլ տակտիկական առավելություններ կամ, ինչպես շախմատային գրականության մեջ է հիշատակվում, «կմնային առանց բավականաչափ փոխհատուցման»:

8. Ձc3 Ձce7: Սպիտակների վերջին քայլը տվեց ևս մի օգուտ՝ նրանք իրենց ձին զարգացրին տեմպով: 8...Ձce 7. քայլի փոխարեն ուժեղ է թվում 8. Ձcb4. ձիու պաշտպանությունը զուգակցելով հակագրոհի հետ՝ հարվածի տակ է c2 զինվորը: Այն ժամանակ 9. Թe4 քայլով կպաշտպանվի c2 զինվորը. և կստեղծվի երկու սպառնալիք՝ a3 և d4:

9. d4! բնորոշ մոմենտ: Զինվորը վերցնել չի կարելի, որովհետև 9...ed 10. Ձ: d5 Ձ: d5 11. Թe4+ քայլերից հետո սպիտակները վերականգնում են նյութական հավասարակշռությունը՝ պահպանելով ուժեղ գրոհ: Ահա նման օրինաչափությունը և առողջ ստրատեգիան հնարավորություն են տալիս հասցնել օգտակար տակտիկական հարված: Այս բոլորը բնորոշ երևույթներ են շախմատում:



9...c6: Սևերը առավել հուսալի միջոցով d5 ձին պաշտպանում են զինվորով: Այժմ արդեն դժվար չէ սպիտակների համար ճիշտ շարունակություն գտնել՝ 10. Փg5! այնուհետև կատարել երկար փոխատեղություն՝ շարունակելով գրոհը:

Այդ տարբերակից չի կարելի հետևություն անել, որ 3...Ձf6 քայլը վատ է սևերի համար:



Այս դիրքում պետք է խաղալ 5...Ձa5: 6. Փb5+ (սպիտակները օգտվելով հնարավորությունից՝ հարվածի տակից փիղը հեռացնում են տեմպով և ժամանակ շահում նյութական գերակշռությունը ամրապնդելու համար) 6... c6 7. dc bc 8. Փe2 h6 9. Ձf3 e4. սևերը մեկ հատ պակաս զինվորի փոխարեն ստանում են երկարատև նախաձեռնություն: Օրինակ՝ 10. Ձe5 Թd1 11. f4 Փc5. հարկադրելով սպիտակներին 12. Նf1 քայլն անել. հետևապես և հրաժարվել կարճ կողմում փոխատեղում կատարելու հնարավորությունից: Այդ նույն ժամանակ սպիտակների թագուհու թևի ֆիգուրների զարգացումը դժվարացել է: Սովորաբար 10-րդ քայլում սևերը Փd6 են խաղում և սպիտակների 11. d4 կամ f4 պատասխանից հետո «կողանցուկ» վերցնելով 11...ed (կամ ef), այնուհետև Թc7. ապա կարճ փոխատեղություն, և նրանք ֆիգուրային ուժեղ խաղ են ստանում:

Այս սկիզբը շախմատում «երկու ձիերի սկզբնախաղ» է կոչվում:

Տ. Պետրոսյան

## *Մի անգամ...*

* * *

*Ֆրանսիական հայտնի գրող և փիլիսոփա Միշել Մոնտանը մի անգամ զրույցի ժամանակ ասաց.*

*— Երևում է, որ աստված մարդկանց շնորհք բաժանելիս ամենաարդարը խելքն է բաժանել։*

*— Իսկ ինչպե՞ս,— հարցրին նրան։*

*— Պարզ է, չէ՞ որ ոչ ոք չի բողոքում, թե ինքը քիչ խելք ունի։*

* * *

*Մի անգամ թղթակիցներից մեկը գալիս է Էյնշտեյնի մոտ։*

*— Ասացեք, խնդրեմ,— հարցնում է թղթակիցը,— ինչպե՞ս եք դուք կարողանում հիշել Ձեր մեջ ծագած մեծ մտքերը։ Դուք ունեք հատուկ ծոցատե՞տր, թե՞ գրի եք առնում ուր պատահի...*

*— Սիրելիս,— պատասխանում է Էյնշտեյնը,— մեծ մտքերը այնքան հազվադեպ են ծագում, որ դրանք գրի առնելու անհրաժեշտություն չի լինում, միշտ հիշվում են։*

* * *

*Մի երիտասարդ կոմպոզիտոր դիմեց Մոցարտին, ասելով, որ ինքն ուզում է սիմֆոնիա ստեղծել, բայց չգիտե, թե ինչից սկսել։*

*— Դուք դեռ շատ եք երիտասարդ,— ասաց Մոցարտը,— լավ չէ՞ր լինի, որ սկսեիք հասարակ բալլադներից։*

*— Բայց չէ՞ որ դուք սկսեցիք սիմֆոնիա գրել, երբ դեռ տասը տարեկան էիք,— բողոքեց երիտասարդը։*

*— Ճիշտ է, բայց ես ոչ ոքի չէի հարցնում, թե ինչից սկսել։*



**Բաժինը վարում է պրոֆ. Գ. Ի. ՏՈՒՆՅԱՆԸ**

# ՍՈՒՐԹՍԵՅԸ ԵՐԿՈՒ ՏԱՐԵԿԱՆ Է

Իսլանդական «Իսլեֆուր» նավը ձկնորսության էր դուրս եկել: Լուսադեմին անձնակազմը դեռ խորը քնի մեջ էր: Հերթապահության էր մնացել միայն նավի խոհարարը: Հանկարծ նա ուժգին ցնցում զգաց: Թվաց, թե նավը ջրապտույտի մեջ է ընկել: Խոհարարն սկսեց ուշադրությամբ դիտել շրջապատը և ահա նկատեց մի սև ծխայուն, որն ուղղակի բարձրանում էր ծովի միջից: Կարծելով, թե նավ է վառվում, նա իսկույն արթնացրեց նավապետին, և նրանք ուղղություն վերցրին դեպի ծուխը: Ռադիոյով շտապեց մոտակա պահակակետից օգնություն խնդրել, բայց նրան պատասխանեցին, որ աղետի ոչ մի ազդանշան չի եղել: Նավը մոտեցավ, և ձկնորսները տեսան, որ ծխայուն շուրջը ծովը եռում էր: Ջրի տակից դուրս էին ժայթքում գոլորշի, մոխիր ու հրահեղուկ վիթխարի զանգվածներ: Ստորջրյա հրաբուխ էր:

Հետևյալ գիշերը ծովի վրա հայտնվեց մի սև շերտ: Կղզի՛: Հետագայում ծուխը, գոլորշին, մոխիրն ու քարերը ավելի ու ավելի վեր էին բարձրանում, երբեմն հասնելով մինչև տասնհինգ կիլոմետրի: Այժմ արդեն ծխայունը կարելի էր տեսնել նույնիսկ Իսլանդիայի մայրաքաղաք Ռեյկյավիկից, որն այդտեղից հեռու է հարյուր քսան կիլոմետր:

Դա 1963 թվականի նոյեմբերի 14-ին էր:

Անցան օրեր: Նորածին հրաբուխն սկսեց ավելի սաստկանալ՝ մեծ անհանգստություն պատճառելով մոտակա կղզիների բնակիչներին: Մոխրի հաստ շերտով ծածկվեցին հարևան կղզիները, կեղտոտվեցին վառ գույներով ներկված տնակները: Իսկ այդ վայրերում աղբյուրներ չկան, և բնակիչները խմելու համար անձրևաջուր են հավաքում կտուրներից: Այլևս այդ ջուրը խմել չէր լինում, որովհետև նրանից գալիս էր ծծումբի ու փտորի ուժեղ հոտ:

Իսկ ի՞նչ էր լինելու ձկնորսների վիճակը: Չէ՞ որ հրաբխային մոխիրը շարունակ իջնում էր ջրի հատակը: Չե՞ն վնասվի արդյոք ջրիմուռներն ու ձկները:

Սակայն ձկնորսները չտուժեցին, իսկ կտուրներին նստած մոխիրն անվերջ մաքրում էին ծովաջրով:

Հետագայում կղզին ավելի ու ավելի մեծ չափեր էր ընդունում: Ժայթքման երկրորդ օրը կղզու բարձրությունը հասնում էր երեսունինը մետրի, իսկ երկարությունը՝ հինգ հարյուր քառասունի: Սկզբում դա երկար, նեղ շերտ էր, այնուհետև դարձավ ձվաձև և, վերջապես, ընդունեց գրեթե բոլորաձև տեսք: Դեկտեմբերի վերջին հրաբխի կոնի բարձրությունը հասավ հարյուր հիսուներկու մետրի:

Գիտնականները հուզմունքով հետևում էին նոր կղզու ծննդին: Անվնա՞ս կմնա, թե՞ կարժանանա Նիեյ կղզու բախտին, որը կրկին սուզվեց ծովի խորքը (Նիեյ կղզին ծնվեց ստորջրյա ժայթքումից 1783 թվականին, Ռեյկյավիկից հարյուր կիլոմետր հեռավորության վրա: Մինչև նավը կմոտենար կղզուն, ծովի անդունդը կուլ տվեց նրան):

Անցան շաբաթներ: Գիտնականները շարունակում էին զննել նորածին կղզին, որին տրվեց Սուրթսեյ անունը: Ինքնաթիռներից նրանք պարզորոշ տեսնում էին, թե ինչպես ծովի ջուրը լցվում էր խառնարանը և խանգարում լավայի դուրս գալուն: Բայց մի անգամ կղզու



հյուսիս-արևելյան մասում վեր խոյացավ սպիտակ գոլորշու մի սյուն: Լավան դուրս եկավ խորքից և սկսեց դանդաղ հոսել դեպի ծովը: Այնտեղ, ուր հանդիպեցին ջուրն ու կրակը, գոլորշու վիթխարի մի պատ բարձրացավ: Այժմ արդեն պարզ էր, որ կղզին չի անհետանա, այն ստանում է հաստատուն կեղև: Խառնարանից դուրս եկող լավան կարծրացնում և իրենով ծածկում էր ոչ-դիմացկուն հիմքը:

Աշխարհում շատ կան նման կազմություն ունեցող կղզիներ: Բայց մինչ այդ մարդիկ երբեք չէին տեսել, թե ինչպես են դրանք ծնվում ու ձևավորվում:

Ծննդյան առաջին օրերին Սուրթսեյ կղզու վրա չկար ոչ մի կենդանի էակ, այն ծածկված էր միայն ծխացող խարամով և հրաբխային հրակարմիր ռումբերով: Երբ կղզու մեծ մասը սառեց՝ սկսեցին երևան գալ կենդանի էակներ: Առաջինը նկատվեցին կակղամորթներն ու թիթեռները: Հետագայում առատորեն հայտնվեցին զանազան տեսակի մանրէներ ու բորբոսներ: Դրանք բերել էր քամին. գուցե և բերել էին ճայերն ու չվող թռչունները: Կղզու ափերին կամաց-կամաց տեղ գրավեցին ծովային ջրիմուռները:

Հիմա հրաբուխը հանգիստ է: Գիտնականները շարունակում են իրենց ուսումնասիրությունները:

## 7 ՏԱՐԻ ԱՌԱՆՑ ՍՆՆԴԻ

Ինչքա՞ն ժամանակ կարելի է դիմանալ առանց սննդի: Այս հարցը շատ է հետաքրքրել գիտնականներին և արձանագրվել են բազմաթիվ դեպքեր, երբ կենդանիները երկար ժամանակ ապրել են առանց սնվելու. օրինակ՝ օձերը, կրիաները, կոկորդիլոսները ամիսներով կարող են դիմանալ քաղցին: Երկար է դիմանում նաև չղջիկը: 35 օր ոչինչ չուտելուց հետո, չղջիկը կարողացել է թռչել:

Պարզվում է, որ առավել դիմացկուն է անտառային տիզը, որը լաբորատոր պայմաններում առանց սննդի ապրել է 7 տարի:

## ԹՌՉՈՒՆ ԿՈԼԵԿՑԻՈՆԵՐԸ

*Երբ առաջին հետազոտողները հասան Ավստրալիայի խորքերը, այնտեղ հանդիպեցին շատ տարօրինակությունների: Նրանք տեսան ձվածին և պարկավոր կենդանիներ, թռչունների ինկուբատորներ, ոչ բարձր թփուտների մեջ ծաղիկներից պատրաստված ինչ-որ արտասովոր հյուղակներ: Հյուղակներն ունեին փոքրիկ շիվերից պատրաստված հարթակներ և կես մետր հեռավորության վրա շրջապատված էին հողի մեջ խրված փայտիկների ամուր ցանկապատով: Ցանկապատի վերին վերջավորությունները թեքված էին միմյանց հանդիպակաց՝ կազմելով այսպես կոչված երկթեք տանիք:*

*Հյուղակի մուտքերից մեկի առջև թափթփված էին հարյուրավոր գույնզգույն մանր իրեր. խեցիներ, սատկած կնճիթավոր միջատներ, ծաղիկներ, հատապտուղներ, սունկեր, քարեր, ոսկորներ, թռչունների փետուրներ, օձի կաշվի կտորներ: Վերջերս գտնվել են նույնիսկ ատամի խոզանակ, դանակներ, պատառաքաղներ, մանկական խաղալիքներ, ժապավեններ, սուրճի բաժակներ (իհարկե, ոչ մեծ), ճարմանդներ, շողակներ և... արհեստական աչք:*



*Եղան տարբեր ենթադրություններ. կապիտան Ստոքսը, որը հինգերորդ աշխարհամասի առաջին հետազոտողներից մեկն էր (1837—43 թթ.) եզրակացրեց, որ հյուղակները կառուցել են տեղացի կանայք՝ իրենց երեխաների զվարճության համար: Իսկ Ավստրալիայի այն ժամանակվա նահանգապետ Գեորգ Գրեյը գտավ, որ հյուղակները կառուցել են կենգուրուները, քանի որ այդ տարօրինակ կենդանիները ընդունակ են ամեն ինչի:*



*Բայց հետո նրանք նկատեցին, որ այդ հյուղակները կառուցում են այն սև թռչունները, որոնց վրա սկզբում ոչ մի ուշադրություն չէին դարձրել: Այդ թռչունները արտաքնապես ոչնչով աչքի չեն ընկնում, ու շատ նման են մեր ագռավներին և արջագռավներին:*

*Դրանք աշխարհին հայտնի են որպես ամեն տեսակի գունավոր, չխչխկան իրերի մոլի կոլեկցիոներներ... Այդ թռչուններն ապրում են նաև Նոր Գվինեայում և նրա մոտակա կղզիներում:*

*Ընդհանրապես ուրիշ շատ կենդանիներ էլ հնարավորության դեպքում իրենց բույնն են բերում գունավոր և փայլուն առարկաներ: Օրինակ, գող-կաչաղակները մեզ արդեն հայտնի են: Գողամոլությամբ են տառապում նաև ագռավները, արջագռավներն ու ճայերը: Եղել են դեպքեր, երբ լեռնային ագռավները փորձել են*

նույնիսկ այրվող խարույկից հանել տաք փայտածխի կտորներ։

Բայց հնդկական ագռավները այդ բոլորից էլ անցել են. նրանք բացում են փաթեթները և եթե այնտեղ գտնում են որևէ գեղեցիկ իր, առանց ամոթի զգացումի փախցնում են այն։ Ահա այդ է պատճառը, որ այնտեղ, որտեղ շատ կան այդպիսի թռչուններ, մարդիկ պատուհանների գոգերին և բաց լուսամուտներով սենյակներում ոչինչ չեն թողնում, անգամ ձեռնոցներ և թաշկինակներ։ Այդ թռչունները շատ ցեյլոնցիների ուղղակի սնանկացրել են։

Մի անգամ Հնդկաստանի հետաքննչական օրգանները հայտնաբերեցին, որ ոսկեղենի խանութից սիստեմատիկ գողություն կատարողները ոչ թե մարդիկ են, այլ... երկու ագռավներ։ Ագռավները գողացել էին մեծ քանակությամբ ակնոցի ոսկյա շրջանակներ։ Հնդկական ճանճորսները ակնոց չեն գողանում, բայց հավաքում են... օձերի կաշիները և դրանով զարդարում իրենց բույնը։

Սիրիական փայտփորիկը այդ նույն նպատակով օգտագործում է բզեզի փայլուն թևերը։ Իսկ «ջուլհակ» բայան (սա լինում է Հնդկաստանում) կենդանի լուսատտիկները ներհյուսում է շշի նմանվող իր բնի պատերին։

## ՋԵՅՄՍ ՈՒԱՏՏԻ ՕԳՆԱԿԱՆԸ



Թե ով է Ջեյմս Ուատտը, այդ մասին գիտեն բոլորը։ Իսկ արդյո՞ք ձեզ ոչինչ չի ասում այնպիսի մի անուն, ինչպիսին է Ջեյմս Մուրդոկը։ Մինչդեռ տաղանդավոր այդ մարդուն Ուատտը պարտական է իր փառքի զգալի մի մասով։

Ջրաղացպանի որդի Մուրդոկը ոչ մի կրթություն չուներ, սակայն դրա փոխարեն նա բացառիկ ընդունակությունների տեր էր, հատկապես այնպիսի աշխատանք կատարելիս, որի համար հմուտ ձեռքեր էին պահանջվում։

1776 թ. աշխատանք գտնելու նպատակով, նա մտավ Ուատտի արհեստանոցը։ Լսելով հաճախորդին, արհեստանոցի տերը նրան ասաց, որ ցավում է, բայց աշխատակցի կարիք չունի ինքը։

Մուրդոկը քայլերն ուղղեց դեպի դուռը։ Այդ պահին Ուատտը նրա ձեռքերի մեջ նկատեց մի տարօրինակ առարկա։

— Այդ ի՞նչ է,— հարցրեց նա։

— Իմ գլխարկը, սըր։

— Ինչի՞ց է այն պատրաստված։

— Փայտից, սըր։

— Որտեղի՞ց ես ճարել։

— Ես եմ չարխել խառատի հաստոցի վրա։

— Իսկ որտե՞ղ ես դու սովորել աշխատել այդ հաստոցի վրա։

— Մեր տանը։ Խառատի հաստոցը ես ինքս եմ պատրաստել, սըր։

Ուատտը տեղն ու տեղը հայտարարեց, որ նրան օգնական է ընդունում իրեն։ Այդպես սկսվեց այդ երկու տաղանդավոր մարդկանց համատեղ աշխատանքը։ Մուրդոկի ձեռքերով են պատրաստվել համարյա բոլոր մեքենաների նախատիպերը և Ուատտի հնարած մեխանիզմները։

## ԱՆՁՐԵՎ, ՈՐ ԵՐԲԵՔ ՉԻ ԴԱԴԱՐՈՒՄ

Ամենաանձրևոտ տեղը երկրագնդի վրա գտնվում է Պարագվայում, բրազիլական սահմանի մոտ, որտեղ Պարանա գետը ճյուղավորվում է, ավելի քան երկու տասնյակ բազուկների։ Անհիշելի ժամանակներից այնտեղ անընդհատ անձրև է մաղվում։ Որպես խոնավության աղբյուր ծառայում է աշխարհի ամենամեծ ջրվեժներից մեկը՝ Գուաիրա ջրվեժը։

Սարերից մշտապես փչող ուժեղ քամին ջրափոշին տանում է դեպի հարթավայրը՝ դարձնելով այն անձրևի խոշոր կաթիլներ։

## ՓՈՍՏՄԵՅՍՏԵՐԸ ԵԼՔ Է ՈՐՈՆՈՒՄ

ԱՄՆ-ի Տեխաս նահանգում Մոսկվա անունով մի փոքրիկ քաղաք կա: Եվ այդ պատճառով քաղաքի բնակիչները, հաճախ կանգնում են անհարմար դրության առաջ: Հատկապես, տարբեր նահանգներից այստեղ հասցեագրված շատ նամակներն առաջին




հերթին ուղարկվում են ՍՍՀՄ-ի մայրաքաղաքը, որից հետո միայն ետ են գնում իրենց հասցեով:

Քաղաքային փոստմեյստերը հոգնել է բողոքողներին բացատրություններ տալուց: Եվ... նրա գլուխն է եկել բավականին իմաստալից մի միտք: Նա դիմել է ՄԱԿ-ին խնդրելով, որ համոզեն Սովետական Միությանը փոխելու իր մայրաքաղաքի անունը:

## ՈՐԴ ՀՍԿԱՆ

Անձրևային որդը հայտնի է բոլորին, սակայն գոյություն ունեն նաև հսկա որդեր, որոնց երկարությունը մեկից երկու մետր է: Դրանք հանդիպում են Հարավային Ամերիկայի և Ավստրալիայի արևադարձային գոտիներում: Այդ հսկաներից մեկը՝ մեգասկոլիդեսը, որը մատի հաստություն ունի, ապրում է իր փորած ստորերկրյա շավիղներում: Նա հազվադեպ է դուրս գալիս գետնի երես և այն էլ ոչ լրիվ. միայն առաջին մասն է երևում: Ավելի կարծր հողաշերտեր թափանցելու նպատակով, այս որդը հողը անց է կացնում իր աղիքների միջով:

Մեգասկոլիդեսի օրգանիզմը այնքան է հարմարված ստորերկրյա կյանքին, որ հողից դուրս հանելիս իսկույն խեղդվում է:

## ՀԱՄՐ ԹՌՉՈՒՆԸ

Երկարոտ արագիլի կոկորդը այնպիսի դասավորություն ունի, որ նա ձայն հանել չի կարողանում, ձայն չունի: Ի տարբերություն երգող, ծլվլացող և այլ թռչունների, արագիլը բոլորովին համր է ու ձայնը փոխարինվում է կտուցի կտկտոցով:

## Գիտե՞ք, որ...

* * *

*Ջուրն էլ կարող է այրվել... Ադրբեջանական Կերգալան գյուղից ոչ հեռու, այսպես կոչված «այրվող» ջուր կա: Այդ ջուրը վեր է ցայտում փոքրիկ հորատից, առաջացնելով արագահոս մի առվակ: Այրվող լուցկի մոտեցնելու դեպքում, ջուրը բռնկվում է:*

*Գիտնականները դա բացատրում են նրանով, որ ջրի հետ միասին մեթան է դուրս գալիս և այդ գազն է, որ այրվում է երկնագույն բոցով:*

* * *

*Պիրոլը (երգեցիկ թռչուն) իր ձագուկներին օրվա մեջ կերակրում է մոտ հարյուր անգամ: Որպես սնունդ նա ամենից հաճախ օգտագործում է մազմզոտ թրթուրներին, որոնց մյուս թռչունները չեն ուտում: Այսպիսով, ամառվա ընթացքում, պիրոլը մեծ թվով անտառի վնասատուներ է ոչնչացնում:*

* * *

*Հավերն էլ են երաժշտություն սիրում: Երկու տարի առաջ, անգլիական ամսագրերից մեկում*



*գրվեց, որ մի ագարակատեր թռչնաբուն է տարել իր հին ռադիոընդունիչը: Երբ նա ետ է վերցրել ռադիոընդունիչը, հավերի ձվատվությունը խիստ ընկել է: Ագարակատերը ստիպված էր ռադիոընդունիչը վերադարձնել հավերին:*

* * *

*Մոտ երեք հարյուր հազար կիլոմետր թռիչք պետք է կատարի մեկ մեղուն և տասնհինգ միլիոն ծաղիկ հոտոտի, որպեսզի մեկ կիլոգրամ մեղր հավաքի:*



* * *

*Մեքսիկական Չիապաս նահանգում գտնվել է մինչև հիմա գիտությանը անհայտ ծառագորտի մի տեսակ: Գորտի երկարությունը ընդամենը 20 միլիմետր է: Որովայնի մաշկն այնպես թափանցիկ է, որ պարզ կերպով երևում են ներքին օրգանները: Այդ պատճառով էլ գորտը «ապակե» անուն է ստացել: Ցերեկն այդ գորտը քնում է, իսկ մթնշաղի հետ բաց է անում իր սև, ուռուցիկ աչքերը և սկսում մանր միջատներ որսալ:*

Պատրաստիր ինքդ

# ՍԵՂԱՆ




Փոքրիկ սեղանիկ պատրաստելու համար նախապես պետք է վերցնել հնարավորին չափ մաքուր և ոստազուրկ տախտակ, ռանդել նրա լայն եզրերը: Մաքրած տախտակի վրա գծանշման հիմնական գործիքների օգնությամբ (քանոն, կարկին, անկյունարդ, մատիտ) նշում ենք բոլոր երեք մասերը, այսինքն՝ 1, 2 և 3 կտորները: Հետո աղեղնասղոցով կտրում ենք երեսը, իսկ սղոցի օգնությամբ՝ ոտքերը: Կտրելուց հետո ռանդում ենք ոտքերի նեղ մասերը, այնուհետև անկյունարդի օգնությամբ ստուգում բոլոր անկյունները: Սղոցով և տափակ դուրով կտրում և հանում ենք «ա» և «բ» փոսիկները: Ոտքերը պատրաստելուց հետո կարող ենք պատրաստել սեղանի երեսը: Խարտոցով մաքրում ենք եզրերը, ապա կենտրոնով՝ 80 մմ շառավիղով գծում մի շրջան: Շրջանը գծելուց հետո քանոնի և անկյունարդի օգնությամբ երեսը բաժանում ենք 4 հավասար մասերի: Վերջում հավաքում ենք ոտքերը, հետո ամրացնում երեսը: Երբ սեղանը պատրաստ է, պետք է մի փոքր մաքրել հղկաթղթով և ապա ներկել: Երեսը կարելի է ամրացնել մեխերի օգնությամբ, բայց ավելի նպատակահարմար է՝ պտուտակներով:

Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



**Пионер**“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 10380: Պատվեր՝ 2320: Տպաքանակ՝ 13 350: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 5 XI, 1965 թ.: ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 20 կ.



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

# Ժամանց

# ԽՈՐԱՄԱՆԿ ԱՂՎԵՍԸ

Մի անգամ արջը հանդիպեց աղվեսին:

— Այդ ո՞ւր ես գնում, քույրիկս,— հարցրեց արջը:

— Տուն եմ շտապում, նապաստակը երկու հատ գազար է տըվել, պիտի ապուր եփեմ:

— Ես էլ եմ տուն գնում,— ասաց արջը,— ինձ էլ է նապաստակը գազար տվել, չորս հատ, ես էլ ապուր կեփեմ:

Խորամանկ աղվեսը տեսավ, որ



արջի մոտ ավելի շատ գազար կա, քան իր մոտ, ասաց.

— Արջ եղբայր, արի ապուրը միասին եփենք:

Արջը համաձայնեց, և նրանք իսկույն գործի անցան: Միասին կոտրեցին ցախը և խարույկի վրա ապուր եփեցին: Հենց որ պատրաստվեցին ուտել, մի կռունկ հայտնվեց նրանց մոտ:

— Բարև ձեզ,— ասաց կռունկը:— Ա՜յ դուք, անպիտաններ, ապո՞ւր եք եփում: Ինձ էլ չե՞ք հյուրասիրի:

— Ա՛յ, թե ինչ խորամանկն ես,— պատասխանեց աղվեսը:— Իսկ դու մեզ ի՞նչ կտաս դրա փոխարեն:

— Իսկ ես ձեզ ձկնիկներ կըտամ:

Գազանները համաձայնեցին: Նստեցին շրջանաձև, ապուրը հավասար բաժանեցին ու ճաշեցին: Կռունկը գետնին դրեց վեց հատ փոքրիկ ձուկ ու թռավ:

Աղվեսն ասաց արջին.

— Երեք ձկնիկը՝ քեզ, երեքն էլ՝ ինձ:

Արջը մտածեց ու պատասխանեց.

— Այդպես չեղա՛վ, չէ՞ որ ես չորս գազար ունեի, իսկ դու՝ երկու: Ընդամենը վեց եղավ, ձկնիկներն էլ են վեց: Ուրեմն, ձկնիկներն էլ պետք է այդպես բաժանել. չորսը՝ ինձ, երկուսը՝ քեզ:

Որքան էլ աղվեսը վիճեց, բան դուրս չեկավ. ստիպված եղավ վիջել: Իսկ հետո անտառով մեկ հայտարարեց, որ ինքը խորամանկորեն խաբեց արջին:

Իսկ դուք, երեխաներ, ի՞նչ եք կարծում. աղվեսը խաբե՞լ է արջին:

## ԱՅՆ Ո՞Ր ԹԻՎՆ Է

Կարո՞ղ ես գտնել այնպիսի մի թիվ, որը 3-ի վրա բաժանելիս ըստացվի 1 մնացորդ, 4-ի վրա բաժանելիս՝ 2, 5-ի վրա բաժանելիս՝ 3 և 6-ի վրա բաժանելիս՝ 4 մնացորդ:

## ԵՌԱՆԻՇ ԹԻՎ

Այն ո՞ր թիվն է, որից եթե հանես 7, ապա կբաժանվի 7-ի վրա, հանես 8, ապա՝ 8-ի վրա, իսկ եթե հանես 9, կբաժանվի 9-ի վրա:

## «ՈՎՔԵՐ ԵՆ ՄԵՐ ԱՄՍԱԳՐԻ ԼԱՎԱԳՈՒՅՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ»

Մրցանակաբաշխության արդյունքները

*Մրցանակաբաշխությանը մասնակցել է 260 դպրոցական: Նրանցից 86-ը արժանացել են առաջին կարգի հաշաթերթի, 170-ը՝ երկրորդ կարգի, իսկ 4-ը մրցանակաբաշխությունից դուրս են մնացել՝ հարցերին սխալ պատասխանելու և պատասխանները ժամանակին չուղարկելու պատճառով:*

*Առաջին կարգի հաշաթերթ ստացողները պարգևատրվել են նաև նվերներով:*

20 կ.

Ինդեքս 77806



ԾԱՂԻԿՆԵՐ

ԴՈՒԳԱՐՅԱՆ ԳԱՅԱՆԵ
*(Երևան, 6 տարեկան)*

ԳԵՎՈՐԳՅԱՆ ԼԵՎՈՆ
*(Շահումյանի անվ. գյ. 6-րդ դաս. աշակերտ)*

ԱՌԱՎՈՏ